## ՀՈՒԼԻՍԻ 30-Ը ՍՍՀՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐՆ Է










### ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՏԱՐԲԵՐԱՆՇԱՆՆԵՐԸ

1. ՍՍՀՄ նավատորմի ծովակալ:
2. Ծովակալ:
3. Փոխ-ծովակալ:
4. Կոնտր-ծովակալ:

1. Առաջին կարգի կապիտան:
2. Երկրորդ կարգի կապիտան:
3. Երրորդ կարգի կապիտան:
4. Կապիտան-լեյտենանտ:
5. Ավագ լեյտենանտ:
6. Լեյտենանտ:
7. Կրտսեր լեյտենանտ:

1. Միչման:
2. Գլխավոր ավագ:
3. Առաջին կարգի ավագ:
4. Երկրորդ կարգի ավագ:
5. Ավագ նավաստի:
6. Նավաստի:

# ՊԱՏԱՆԻ ՆԱՎԱՄՈԴԵԼԻՍՏՆԵՐԸ



Ծծային հածանավի մոդել

Երևանի քաղաքային պիոներ-պալատի նավամոդելագործների խմբակը ունի քսաներկուամյա պատմություն, մասնակցել է համամիութենական մրցումներին, գրավել մրցանակային տեղեր:

— Խմբակի անդամները նավաստու համազգեստ չեն կրում, բայց լավ նավաստիներ կդառնան,— ասում է խմբակի ղեկավար Սեմյոն Խալաթյանը:—Մեր մարզիչները խմբակի նախկին սաներ են: Ավտոմատիկայի և տելեմեխանիկայի գծով ղեկավար Մկրտիչ Փափուչյանը Սովետական Միության կրկնակի և Եվրոպայի չեմպիոն է, սպորտի վարպետ, իսկ Ավետիս Կարագյոզյանը՝ կարգային մարզիչ:

Այս տարվա օգոստոսին Տուլայում կայանալիք նավամոդելների մրցմանը մասնակցելու են Վարազդատ Շահինյանը՝ «Լենինգրադ» ապրանքատար նավի մոդելով և Արթուր Սարգսյանը՝ «Կատամարանով»:

Խմբակի անդամները իրենց պալատի 50-ամյա հոբելյանի պատվին որոշել են ցուցահանդես բացել, որտեղ կներկայացվեն այն բոլոր մոդելները, որոնցով պատանիները մասնակցել են մրցումների:






# ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ՍՍՀ

Բելոռուսական հինավուրց հողում մի ժամանակ անանցանելի անտառներն ու խոր ճահիճներն էին թագավորում: Սովետական կարգեր հաստատելուց հետո մարդիկ այստեղ անցկացրին լայն ճանապարհներ, կառուցեցին քաղաքներ, գործարաններ, չորացրին շատ ճահիճներ և այժմ այդ նոր հողամասերում աճում են վուշ, կարտոֆիլ, ճակնդեղ:

Բելոռուսիայի սքանչելի անտառներում շատ կան բազմատեսակ գազաններ և թռչուններ, իսկ եղևնուտներում հատապտուղների և սնկերի առատություն է: Ամբողջ աշխարհին հայտնի է Բելոռուսիայի նշանավոր Պուշչա արգելափակոցը, որտեղ ապրում են հազվագյուտ կենդանիներ՝ բիզոններ:

Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին բելոռուսական անտառները մայրական գրկի պես թաքցնում էին ժողովրդական վրիժառուներին՝ անվեհեր պարտիզաններին:

Ո՞վ չի լսել Բրեստ քաղաքի և նրա լեգենդար ամրոցի հերոս պաշտպանների մասին, որոնք հավերժական փառք բերին հայրենի երկրին:

Մեր Միության բազմաթիվ շինարարություններում դուք կտեսնեք հսկայական ինքնաթափ մեքենաներ, որ պատրաստված են Բելոռուսիայում: Աշխարհի շատ դաշտերում աշխատում են «Բելոռուս» մակնիշի հրաշալի տրակտորները: Բելոռուսիայում պատրաստվում են գերազանց որակի հեռուստացույցներ, հաստոցներ, ժամացույցներ: Ձեր տետրերի ու գրքերի թուղթը նույնպես ստացվում է Բելոռուսիայից:

## Երգը

ՅԱՆԿԱ ԿՈՒՊԱԼԱ

Բոցկլտում է որպես կրակ,
Շառաչում է ինչպես մի ծով,
Լցնում է նա աշխարհն արար
Իր մեղեդու զրնգոցով:

Սիրտը սրտին մտերմացնում
Ու կապում է հրով մի վառ,
Եվ խլրտուն ջահելների
Երազներն է խառնում իրար:

Ճախրում է նա երկնի մովում
Արևի հետ համբուրվելով,
Կարոտով է նա միշտ նայում
Լուսնի լույսին խորհրդավոր:

Լուսաստղի հետ այգաբացին
Արտասվում է արցունք-շաղով,
Թռչունների ծլվլոցին
Ձայնակցում է իր ծիծաղով:

Տափաստանով արձակ ու բաց
Սլանում է ինչպես քամին,
Եվ անտառին ընկերացած՝
Հառաչում է հողմի ժամին:

Ցոլում է նա ծաղիկ ու ծառ,
Մութ այրերին հուր է տանում,
Խրճիթներին խուլ ու խավար
Երջանկության լուր է տանում:

Այսպես անվերջ ճախրում է նա,
Վառվում հավետ ու չի մարում...
Եվ չի հոգնի,· չի հնանա,
Եվ չի լռի ոչ մի դարում:

*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ՁԻՆ

ԳԵՆԱԴԻ ԲՈՒՐԱՎԿԻՆ



Հրապարակով անցնում է մի կառք,
Եվ ձին ռունգերն է սեղմել սանձին,
Կառքի հետևից մանուկներն ահա
Վազում են, ճչում. «Վա՜յ, տեսե՜ք, ձի՜ն, ձի՜ն»:

Փայլում են նրանց ծնկներն այրված,
Եվ բոցկլտում են աչքերը վառ,
Զարմանքով նրանք մոտիկ են գալիս
Ու նայում ձիուն երկա՜ր, երկա՜ր:

Ծեր կառապանը մնում է ապշած,
Չի կարողանում գուշակել նա,
Որ իր նժույգը հեքիաթի միջից
Քաղաքին հյուր է եկել հիմա:

Ձին մանուկների շուրջկալում ահա
Ասֆալտի վրա ասես պարում՝
Ե՛վ ականջներն է ցցում շարունակ,
Ե՛վ խուզած պոչը թափահարում:

Իսկ ես նայում եմ, ժպտում ակամա,
Հիշում այն ձմռան ցերեկը շոգ,
Երբ որ մի ավտո տեսնելու համար
Ես վազում էի ճամփի փոշով:

*Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ*

# ԻՆՉՊԵՍ ԳԵՂՋՈՒԿԸ ԱՂԱՅԻ ՀԵՏ ՃԱՇԵՑ



*Մի անգամ գեղջուկները ուռենու տակ նստած, չիբուխ ծծելով, խոսում էին աղայի մասին. նա շատ բարկացկոտ է, ժլատ, մի բաժակ ջուրն ինչ է, լավ է չխնդրես նրանից: Մի գեղջուկ էլ թե.*

*— Է՛հ, մտքումս դնեմ, մի բաժակ ջուր էլ կուզեմ կխմեմ ու դեռ հետն էլ կճաշեմ:*

*Գեղջուկները աղմուկ-աղաղակ բարձրացրին, վիճեցին.*

*— Եթե դու իսկապես կարողանաս աղայի մոտ ճաշել, մենք քեզ մի զույգ լծկան կտանք:*

*Գրազ եկան, ձեռք-ձեռքի խփեցին:*

*Գեղջուկը գնաց աղայի մոտ, խորը գլուխ տվեց ու ցածրաձայն ասաց.*

*— Ողորմած աղա, ոչ ոքի ոչինչ չեմ ասել, վազել եմ ուղիղ ձեզ մոտ. բարի եղեք ասել, ի՞նչ կարժենա այս չափի ոսկու կտորը:*

*Եվ ցույց տվեց իր գեղջկական խոշոր բռունցքը:*

*Ոսկու անունը լսելուն պես, աղայի աչքերը փայլատակեցին:*

— Ներս արի,— ասաց նա,— մի քաշվի, արի, արի:

Գեղջուկը սենյակ մտնելով, շշնջաց.

— Ասացեք, ողորմած աղա, իսկ ի՞նչ կարժենա, եթե այս չափի լինի ոսկու կտորը:

Եվ ցույց տվեց իրար կցած երկու բռունցքները:

Աղան դողալով ասաց.

— Նստիր, գեղջուկ, նստիր, մի բաժակ օղի խմիր:

Իսկ գեղջուկը թե.

— Անր օղու հետ խորտիկ էլ է հարկավոր, ողորմած աղա: Իսկ ասացեք, ի՞նչ կարժենա, եթե այս չափի լինի ոսկու կտորը:

Եվ ցույց տվեց իր գլուխը:

Աղան գույնը թոցրեց, ծափ զարկեց ու կանչեց ծառաներին.

— Խմելու բան բերեք, գավաթներ բերեք, կերակուրներ բերեք: Նստիր ճաշենք, գեղջուկ:

Գեղջուկը նստեց աղայի հետ ճաշելու:

Աղան այրվում էր հետաքրքրությունից, ուզում էր իմանալ, թե որտեղ է այդ ոսկին:

Իսկ գեղջուկը չփչփոցով անուշ էր անում աղայական կերակուրը, այնքան համեղ կերակուր նա չէ՞ր երբեք չէր կերել:

Վերջին պատառը դեռ կուլ չէր տվել, աղան ձեռքը գցեց գլխարկին.

— Դե, գեղջուկ, գնանք ցույց տուր այդ ոսկին:

Գեղջուկը չիբուխը վառելով, գլուխը տարուբերեց.

— Գիտե՞ս ինչ, ողորմած աղա, ես ոչ մի ոսկի էլ չունեմ... հենց այնպես հարցրեցի, թե ի՞նչ կարժենար, եթե ունենայի:

— Դուրս կորիր, ապո՛ւշ:

Գեղջուկը պատասխանեց.

— Է՛, չէ՛, ողորմած աղա, ես ո՛չ ապուշ եմ, ո՛չ էլ այնքան հիմար, քանի որ առանց չարչարվելու, մի զույգ հրաշալի լծկանի տեր դարձա:

*Թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ





# ԲԵՐԵԶԻՆՅԱՆ ԱՆՏԱՌՈՒՄ

*ՊԵՏՐՈՒՍ ԲՐՈՎԿԱ*
*(Բելոռուսիայի ժողովրդական բանաստեղծ)*

Վազում է առվակը սուրհանդակ,
Մտածկոտ լճերի արանքով...
Ավելի լավ երկիր լուսնի տակ,
Չկա՛, չեմ տեսել իմ կյանքում:

Շարժում եմ ճյուղերը ուռենու,
Այն ո՞վ է քրթմնջում առվի մոտ:
Ա՜խ, բարի, շինարար կուղբն է դա,
Նրա հետ վաղո՜ւց եմ ես ծանոթ:

Ողջո՛ւյն քեզ, իմ խելոք իշայծյամ,
Նայի՛ր դու, նայի՛ր ինձ համարձակ,
Մի՛ վախիր,
Մի՛ փախիր, բարեկամ:
Պոպե՜րդ... ի՜նչ պոզեր,
Ինձ թվաց ծառեր են ճյուղապարդ.
Ինձնից մի՛ խուսափիր, սիրելիս,
Համարիր ինձ եղբայր հարազատ:

Գիտեմ, որ անտառում
Դու կույր չես թափառում.
Սնվում ես բնության սեղանից:
Ինչպե՜ս եմ ես հրճվում,
Երբ բերում ես քեզ հետ
Ձագուկին քո քնքուշ, գեղանի:

Երկիր իմ հարազատ.
Ա՜խ, սիրում եմ այնպես,
Գետինդ՝ ծաղկունքով ցողազատ,
Երկինքդ՝ ամպերով փրփրադեզ:

Բերյոզա գետակի վրայով
Սագեր ու բադեր են թռչում.
Օ՜, հող իմ հայրենի,
Դու կանաչ ու կապույտ իմ երազ,
Ինչպես բույսն արևին,
Սիրտս քե՛զ է տենչում:
Դու անուշ օրոր իմ մանկության,
Անբաժան եմ քեզնից հավիտյան:

*Թարգմ. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ*



# ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ

Մարտիրոս Սարյանի տուն-թանգարանը մեր դըպրոցականների համար դարձել է արվեստ սիրելու և հասկանալու մի յուրօրինակ դպրոց։ Մեծ վարպետի ստեղծագործությունը հավասարապես սիրելի է թե՛ մեծերին, թե՛ փոքրերին։ Թանգարանը շատ հաճախ նամակներ է ստանում Միության բոլոր կողմերից։ Գրում են պիոներները, դիմում ինչ-որ խնդրանքով։

Ստորև տպագրված նամակն ստացված է Բելոռուսիայից։ Սիրելի վարպետի մահից հետո, մեզ հասցեագրված առաջին նամակն է սա։

*Թանգարանի դիրեկտոր*
*Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ*

*Մարտիրոս Սարյանի թանկագին հարազատներ.*

*Ես այսօր (մայիսի 6-ին) իմացա Մարտիրոս Սարյանի հասցեն։ Հետո գնացի Բերեզինա՝ էտյուդ նկարելու։ Վերադառնալով, նըստեցի նամակ գրելու Մարտիրոս Սարյանին։ Բայց հասցրեցի գրել ընդամենը մի քանի տող. «Բարև Ձեզ, թանկագին Մարտիրոս Սերգեևիչ։ Այսօր ես իմացա Ձեր հասցեն։ Շատ երկար եմ փնտրել Ձեր հասցեն։ Եվ ահա, վերջապես, Ձեզ նամակ եմ գրում...»*

*Այս պահին էլ ռադիոյով, որը միացված էր, հաղորդեցին՝ «Այսօր, 93 տարեկան հասակում վախճանվեց Մարտիրոս Սարգսի Սարյանը...»*

*Սիրտս միանգամից ասես կանգ առավ, աչքերս լցվեցին, հիմա գրում եմ արցունքների մեջ։ Ես վաղուց էի ցանկանում նամակ գրել Մարտիրոս Սարյանին։ Մարտիրոս Սարյանը թողեց անմոռանալի հիշատակ։ Այսօր ես նկարեցի մի փոքր էտյուդ և դա ինձ համար կլինի ամենաթանկագինը։*

*Ես կարդացել եմ գրքեր և հոդվածներ մեծ գեղանկարչի կյանքի և ստեղծագործության մասին։ Ինձ մոտ կան մի քանի վերատպություններ նկարչի գործերից։ Իմ մոր հետ ես ապրում եմ մի փոքրիկ սենյակում և այս վերատպությունները միշտ կախված են պատերին։ Մեր սենյակը հյուսիսային կողմում է, արևը ներս է ընկնում միայն առավոտյան, այն էլ միայն մի անկյունում, իսկ այս վերատպությունները, իրենց գույներով, լուսավորում են ամբողջ մեր սենյակը։*

*Այո՛, չեմ կարող ինձ ներել, որ վաղօրոք չեմ կարողացել գըտնել Մարտիրոս Սարյանի հասցեն, չէ՞ որ այնքան հարցեր ունեի նրան տալու։ Երևի ես երջանիկ չեմ։*

*Ես դժվար պիտի պատկերացնեմ, որ այլևս չի լինելու, չկա Մարտիրոս Սարյանը։ Իհարկե կարելի է շատ խոսել ու գրել այդպիսի Մարդու մասին, բայց ես չեմ կարող։ Ուզում եմ նորից արտագրել այս նամակը, բայց չեմ կարող։ Միևնույն է, չպիտի կարողանամ ավելի լավ գրել, դողդողում են ձեռքերս և խնդրում եմ ինձ ներեք։*

*Ես շատ պիտի ուզեի ունենալ գոնե մի վրձին, որով աշխատել է վարպետը։ Շատ եմ խնդրում ուղարկեք ինձ մի վրձին, նա կմնա ինձ մոտ իբրև սրբություն։ Իսկ վերատպություններ ես դարձյալ կճարեմ։ Եթե մի բան ցանկանում եմ, կատարում եմ։ Ուզեցի ունենալ Մարտիրոս Սարյանի հասցեն, և ունեցա։ Սակայն...*

*Ես շատ, շատ եմ խնդրում բավարարել իմ խնդրանքը։ Ուզում եմ, որ այս երեկոն, ռադիոյի այս հաղորդումը մնա իմ մեջ ամբողջ կյանքում։*

*Այս տարի ես ցանկանում եմ ընդունվել Մինսկի գեղարվեստական ուսումնարանը և դառնալ նկարիչ։ Ես 15 տարեկան եմ։*

ԳԵՆԱԴԻ

# Վ Ա Ր Պ Ե Տ Ը

Վարպետ տիտղոսին մեր ժողովուրդը արժանացնում է իր բացառիկ մեծերին: Այդ բացառիկ մեծ արվեստագետներից է Մարտիրոս Սարյանը: Ժողովուրդը նրա մեջ տեսնում էր իր հավաքական կերպարը, իր դեմքը, իր խիղճը, իր ոգին:

Վարպետը ազգի խորհրդանիշ է: Այլապես ինչո՞ւ օտար հյուրը Զվարթնոցն ու Գեղարդը տեսնելուց բացի, անպայման մտնում էր այն տունը, ուր ապրում էր Սարյանը: Նա ինքը այդ մեծարումը չէր նկատում, որովհետև ճշմարիտ մեծություն էր:

Պետք էր տեսնել, թե ինչ հմայող տպավորություն էր թողնում նա իր անձով, իր սուր ու իմաստուն, սարյանական հումորով զրուցակից այցելուների վրա:

Առաջին անգամ գնացի Մ. Սարյանի մոտ 1947 թ., որ նրան հրավիրեմ նկարչական ուսումնարան՝ մեր ավարտական քննությանը ներկա գտնվելու:

Ներկայացա, հարցրեց անունս, հետո կրկնել տվեց, ինձ թվաց չլսեց, բայց չէ՝ նրան դուր չէր եկել հապավումը. «Դու Ալեքսանդր Գրիգորյան ես, և ոչինչ, որ երկար է, սրանից հետո այդպես լրիվ կգրես անունդ»:

Վարպետին ես տեսել էի և առաջ, բայց այդ օրը առանձնակի ուշադրությամբ էի նայում նրա ճերմակ, գանգուր մազերին, որ թափվել էին սպիտակ ճակատի վրա. հոնքերի տակից ինձ էին նայում սուր, զննող ու ժպտուն աչքերը: Ե՛վ տան տերը, և՛ տունը ինձ համակեցին մի ջերմությամբ, որը հետո շատ ու շատ տարիներ պիտի տաքացներ ինձ:

Մինչև ուսումնարան մենք քայլեցինք ոտքով: Վարպետը խոսում էր արվեստի մասին. «Իսկ կյանքը ինչքան էլ երկար լինի, կարճ է, պետք է ամեն օր նկարել»: Ճակատագրի բերումով ես դարձա Վարպետի ազատ ունկնդիրը, աշակերտելով նրան ամենուրեք՝ տանը, փողոցում, արվեստանոցում:

— Մի վախենա, քիփ ազատ, արա՝ ինչ որ թելադրում է հոգիդ, մի լսիր ոչ ոքի, ի՛նձ էլ մի լսիր, միայն թե ինքդ քեզ չդավաճանես: Ամեն մարդ իր աշխարհն ունի և արվեստում էլ պիտի իր աշխարհում լող տա:

Անկեղծության ու անմիջականության մեջ էր գտնում Սարյանը արվեստագետի ինքնահաստատումը:

Անդավաճան լինել սրտի ձայնին, հավատարիմ մնալ բնությանը. այս էր նրա դավանանքը, այս էր նա համարում այն ակունքը, որից հորդում է իսկական արվեստը:

Մեծ լինելով, մեծերին հատուկ պարզություն ս իմաստություն ուներ:

— Կարող էինք չլինել, չէ՞,— ասում էր Վարպետը,— բայց կանք, ապրում ենք, իսկ եթե մարդ ապրում է՝ պիտի գեղեցիկ ապրի:

Գեղեցիկ ապրեց Վարպետը, բայց ո՛չ սենտիմենտալ ու ո՛չ ցուցամոլ:

Մի զրույցի ժամանակ ինձ համար շատ զարմանալի պարզվեց, որ Սարյանը երբեք ծաղիկներ չի նվիրել անգամ իր ապագա կնոջը՝ Լուսիկ Աղայանին:

— Գալիս էր մեր տուն, բաց էր անում հետը բերած թերթը, կարդում ծայրից-ծայր, նորից դընում գրպանը, մի քիչ զրուցում ու գնում էր,— պատմում էր Լուսիկ Լազարևնան: Նայեցի Վարպետին, որը լուռ ժպտալով, լսում էր:

Նրան օգնած լինելու համար ասացի.

— Ինչպե՞ս չի նվիրել ձեզ ծաղիկներ, իսկ այդ տարիներին նրա նկարած հրաշալի նատյուրմորտները՝ դաշտային ծաղիկներով, ո՞ւմ համար էին, ո՞ւմ էին նվիրված:

Վարպետը ժպտալով ավելացրեց.

— Լուսիկ ջան, մի՞թե մինչև հիմա դու չգիտեիր, որ այդ բոլոր ծաղիկները քեզ էին նվիրված:

Մի օր, Վարպետը կանգնած էր իր այգում ու տխուր նայում էր կոտրտված վարդերի ճյուղերին: Կոտրել էին ու ավելի շատ փչացրել, քան տարել:

— Տեսնո՞ւմ ես, բնությունը հրաշքով ստեղծում է նույն հողից այսքան գեղեցիկ գույներ, կարմիր, դեղին, կանաչ, հրաշք է, չէ՞, իսկ մարդիկ փչացնում են, ափսոս է, չէ՞:

Տեսնելով Վարպետի շանը, ես անզգուշորեն իմ զայրույթի չափը անցկացրի.

— Բա Բենքին ո՞ւր էր, չէր կարո՞ղ դրանց հախից գար:

— Չէ, չէղա՛վ...—խոսքս կտրեց Վարպետը,— նրանք էլ մարդ են, չէ...—Նա ոչ միայն ուզում էր

տեսնել Հայաստանը արևոտ ու այգիներով պատված, ինչպես ինքն էր նկարում իր հեքիաթային կտավներում, այլև ուզում էր, որ ամեն մարդ լիներ այգեպանի պես հոգատար դեպի այն ամենը, որ ծնվում էր մեր հողում:

Վարպետը օժտված լինելով հումորով, այն գործադրում էր մեծ տակտով, երբեք չվիրավորելով մարդու անձնավորությունը:

Մի օր Վարպետի ծոռը չորեքթաթ քայլում էր սեղանի ու աթոռների աշխարհում և հանկարծ լաց եղավ, նա անզգուշորեն մատը դրել էր աթոռի հենակի արանքը և դժվարանում էր հանել: Երբ ամեն ինչ բարեհաջող վերջացավ, մեկը ժպտալով ասաց.

— Այ դու դմբլո. էդ ի՞նչ էիր արել:

Վարպետը միջամտեց.

— Չասե՛ս, չի կարելի վիրավորել երեխային:

Նա նույնիսկ իր չսիրած նկարիչների մասին ասում էր միայն այսքանը.

— Պոեզիայից զուրկ մարդիկ են:

Նա ասում էր.

— Ինչպե՞ս կարելի է կրկնել բնությանը, դա անհնարին բան է, ինչպե՞ս կարելի է կրկնել անկրկնելին, պետք է նկարել այն, ինչը մեր մեջ է, ինչ մենք ստանում ենք բնությունից, նրա հետ շփվելիս:

Ես հաճախ էի թխկթխկացնում մուրճով Վարպետի արվեստանոցում, երբ հարկավոր էր կտավներ ձգել:

— Վարպետ, լավ կոշկակար կլինեի չէ՞,—ասի մի անգամ:

— Ինչո՞ւ չէ: Եթե սիրում ես՝ կլինեիր: Մարդ պիտի իր գործը սիրի, իր ամբողջ կյանքը նվիրի այդ գործին, նոր միայն մի բան կարող է դառնալ, թե չէ ոչ մի բան չի ստացվի: Այ Վան-Գոգը ի՜նչ մեծ նկարիչ է, իր ամբողջ կյանքը նվիրել է նկարչությանը, ինչպե՞ս կարող եմ ես նրան չսիրել: Չի հնարել, չի կեղծել, չի ուզել դուր գալ: Ամբողջովին նվիրվել է արվեստին:

Այդպիսին էր նաև Մարտիրոս Սարյանը: Ընդունված է ասել, որ Սարյանը արևի երգիչ է, արևոտ Հայաստանի երգիչը: Արև ու լույս, այո՛, շատ կա նրա կտավներում, բայց այդ լույսը իր հոգու լույսն էր, իր հոգու արևը, արևը միայն գույների մեջ չէ, մի՞թե քիչ արև կա նրա գծանկարներում, մի՞թե արև չկա Մյասնիկյանի դիմանկարում, Արուս Ոսկանյանի ու Փափազյանի կրակոտ աչքերում, Լուսիկ Սարյանի կենսախինդ դեմքին:

Սարյանի արվեստը իր էությամբ է արևոտ ու ազգային-մոնումենտալ. լեռներ, խրոխտ մարդիկ, պտղակալած այգիներ:

Վարպետը իր սիրած նկարիչներից մեկի՝ Ռենուարի մասին ասում էր.

— Ծա՜տ է ֆրանսիացի:

Մենք նույնը կարող ենք ասել իր՝ Մարտիրոս Սարյանի մասին.

— Ծա՜տ է հայ, նա չէր պատկերացնում իրեն առանց Հայաստանի, ինչպես մեր ժողովուրդը չի պատկերացնում Հայաստանն առանց Սարյանի:

*ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ՊԱՏԱՆԻ ԱՅԳԵՊԱՆՆԵՐ

**Երևանի պատանի բնասերների կայանի պիոներներին**

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Ստեղծել եք դուք մի դրախտ
Երբեմնի չոր անապատում,
Ինձ երազ է թվում մի պահ
Ու տեսածիս չեմ հավատում:

Ստեղծել եք ձեր ձեռքերով
Քանի-քանի՛ տեսակ մրգեր:
Ա՜յ ինչպիսի ձեռքերին ենք
Անվանում մենք ոսկի ձեռքեր:

Բարիքներն այս ծովացել են
Կաթիլ-կաթիլ ձեր քրտինքից,
Դուք էլ այնքան լավն եք, համեստ,
Որ շիկնում եք գովասանքից:

Չեմ մոռանա ես ձեզ երբեք,
Այգեպաններ իմ թանկագին,
Թող տա միշտ ծով բարիք ու բերք
Ոսկեհանդերձ այս ձեր այգին:




*ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ*

Դուք ոտնաձայներ եք լսում դռների մոտ: Ինչ-որ մեկը բախում է դուռը. հյուր է: Նա պայմանական նշանով, դուռը բախելով, նախազգուշացնում է իր գալու մասին: Դասական Արևելքի ավանդների համաձայն, դուռը բախելու փոխարեն ծափ էին տալիս: Մի ժամանակ Եվրոպայում անվայել բան էր համարվում դուռը բախելը: Դրա փոխարեն եղունգով ճանկռում էին դուռը, որի համար համապատասխան երկարության եղունգներ էին պահում: Ասենք, հիմա էլ դուռ բախելն անցած սովորույթ է դարձել: Գրեթե ամենուրեք, ուր էլեկտրականություն կա, դրան փոխարինել է զանգը: Երբվանի՞ց են, արդյոք, մարդիկ միմյանց տուն հյուր գնում գալիս: Դեռևս նախնադարյան որսորդը, հաղորդակցվելու ինչ-որ անորոշ ենթագիտակցական մղումով ըշտապում էր քարանձավի իր հարևանի մոտ՝ որսի, եղանակի կամ իրենց հետաքրքրող այլևայլ հարցերի մասին խոսելու համար:

Բայց մեր հեռավոր նախահայրը, իհարկե, չէր կարող կռահել հյուր գնալու մեջ դրված բիոլոգիական այն խոր բնազդի մասին, որ մարդու՝ իր նմանի հետ շփվելու բնական ձգտումն էր:

Հյուր ընդունելու մանրակրկիտ մշակված արարողություն է եղել հնագույն ժամանակներում:

Վարվելաձևի և արարողությունների «Ի-լի» գիրքը Չինաստանում գրվել է երեք հազար տարի առաջ: Այդ գրքի գլուխներից մեկը նվիրված է այցելություններին: Հյուրը և տանտերը պարտավոր էին երկար ժամանակ փոխադարձ ներողություններ շռայլել. մեկն ասում էր, թե ինքն արժանի չէ նրման պատվավոր հյուր ընդունելուն, իսկ մյուսը բազմիցս առարկում էր, թե, ընդհակառակը, այդ ինքը չէ արժանի հյուրընկալվելու պատվին և այլն:

Հավանաբար մարդիկ, որ կարող էին երկարուբարակ փոխադարձ հարգանքի խոսքեր շռայլել, պետք է ոչ միայն առատորեն օժտված լինեին քաղաքավարությամբ, այլև անսպառ ժամանակ ունենային: Ինչ վերաբերում է ժամանակին, ապա դա առանձին խոսակցության նյութ է:

## ՃՇՏԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԱՍԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ

Մի՞թե տարօրինակ չէ, որ հին Հունաստանում, ուր մարդիկ արևի կամ ավազի ժամացույցներից էին օգտվում, ավելի ճշտապահ էին, քան մենք ձեզ հետ միասին: Իբրև օրենք, այնտեղ ոչ մեկը մյուսին չէր սպասում: Եթե մարդը չէր գալիս ժամանակին, ուրեմն նա չպետք է գար առհասարակ: Անճշտապահությունը հարգանքի բացակայության նշան էր համարվում: Դա այդպես է ընկալվել միշտ ապես և բոլորի կողմից: Սակայն, ճշտապահություն պահանջելով ուրիշներից, մարդիկ չեն նկատում այդ սքանչելի հատկության բացակայությունն իրենց մոտ: Ասենք, այս ճշմարտությունն այնքան հին է, որքան առածն այն մարդու մասին, որ ուրիշի աչքի փուշը տեսնում է, իսկ իր աչքի գերանը՝ ոչ:

Մի անգամ Իվան Ահեղն առիթ է ունենում քաղաքավարության դաս տալ անճշտապահ այցելուներին: Լիտվացի դեսպանները, որոնց համար ընդունելության հատուկ ժամ էր նշանակված, մի քիչ ուշանում են, ստիպելով արքային սպասել, մինչև որ «իրենց քահանաների» քարոզն ավարտվի: Հաջորդ օրը Ահեղը դեսպաններին հարկադրում է սպասել, մինչև «արքայական պատարագն ավարտվի»:

Ինչպես հայտնի է, ֆրանսիական թագավորները կարողանում էին խոսել աֆորիզմներով: Երբեմն թվում է, թե նրանք իրենց կյանքն ապրել են նրա համար, որ իրենցից հետո փայլուն մշակ-



ված դարձվածքներ թողնեն, ինչպես. «Պետությունը՝ այդ ես եմ» կամ «Մեկնից հետո՝ ջրհեղեղ»:

«Ճշտապահությունը արքաների քաղաքավարությունն է» դարձվածքը պատկանում է Լյուդովիկոս 18-րդին: Այս միապետը, որով ավարտվում է Լյուդովիկոսների մի ամբողջ շարք, համոզված էր, որ ճշտապահությունը քաղաքավարության միակ ձևն է, որ կարելի է պահանջել նույնիսկ արքաներից:

Բայց տարիներն անցնում էին, գահերը կործանվում: Եվ հանկարծ պարզվում է, որ այդ ակնիվ հատկությունը՝ ճշտապահությունը, ամենևին էլ սալոնային սիրալիրություն չէ, ոչ էլ արքաների արտոնությունը: Ճշտապահությունըն ու կարգապահությունը դարձան հեղափոխականների հավատարիմ վենքը:

— Ճշտապահությունը,— ասում էր Լենինը,— պարտադիր է հեղափոխականի համար:

Ինքը՝ Լենինը, իր օրինակով ճշտապահության կատարյալ օրինակ էր: «Երբեք չի պատահել,— հիշում է Ե. Ստասովը,— որ նա չգար: Ճիշտ այդպես էլ չի եղել դեպք, որ նա ուշանար»:

Ահա հետաքրքիր մի զուգադիպություն: Էնգելսի գաղափարակիցներից շատերը ընդգծում էին նրա «արտակարգ ճշտապահությունն ու կարգապահությունը, հատկություններ, որ նա հանդես էր բերում մարդկանց հետ ունեցած քաղաքական ու հասարակական հարաբերությունների մեջ»:

Ի՞նչ է սա. մի՞թե բնավորությունների արտակարգ նմանություն: Ոչ, դրա հիմքում ընկած է կյանքի ընկալման ընդհանրությունը, կատարված գործի կարևորության ըմբռնումը, որքան կարելի է շատ գործ անելու ձգտումը, և իբրև հետևանք՝ խստագույն վերաբերմունք իր և ուրիշների ժամանակի հանդեպ:

Իր և ուրիշի ժամանակի կորուստը չէր հանդուրժում Լենինը: Ուրիշի ժամանակի հանդեպ անհարգալից վերաբերմունքը նա «այլանդակություն և վայրենություն» էր համարում: Այն ժողովները, որ Լենինն էր ղեկավարում, սկսվում էին ճիշտ ժամանակին: «Ժողովրդական կոմիսարների խորհուրդի նիստերին Վլադիմիր Իլյիչը գալիս էր սկսվելուց 10—15 րոպե առաջ, նստում էր բազկաթոռին, նայում ժամացույցին, և եթե նիստը սկսվելիս Ժողկոմխորհի ոչ բոլոր անդամներն էին ներ-



կա լինում, շատ դժգոհ էր մնում... Նիստից ուշանալը նա դիտում էր իբրև ժամանակի անթույլատրելի կորուստ»:

Մեզ հայտնի է մի դեպք, երբ ուշացումն արդարացի է եղել: Այդ դեպքը պատահել է Պաստյորի հետ. նա ճիշտ ժամանակին չի ներկայացել իր ամուսնության արարողությանը, կլանված է եղել փորձով: Կատաղության դեմ նրա ստացած շիճուկը հազարավոր մարդկային կյանքեր է փրկել: Մենք չգիտենք, թե ինչպես է վերաբերել այդ ուշացմանը նրա ապագա կինը: Անշուշտ, նա հասկացել է Պաստյորին: Բայց այս դեպքը, կրկնում ենք, մեզ հայտնի այն սակավաթիվ դեպքերից է, երբ ուշացումն արդարացել է:

## ԱՆԿՈՉ ՀՅՈՒՐԵՐ

Երբ ֆրանսուհի գրող Ա. Լ. դե Ստալը ժամանում է Վայմար՝ Գյոթեին այցելելու վճռական մտադրությամբ, մեծ գրողը, լսելով այդ մասին, բնավ էլ հրճվանքով չի ընդունում լուրը: Նա վաղուց էր լսել այդ կնոջ անտակտության մասին, նրանք չունեին ընդհանուր հետաքրքրություններ, այդ կնոջ հետ կայանալիք զրույցը չէր հետաքրքրում Գյոթեին և, բնական է, որ նա ջանում էր խուսափել տհաճ հանդիպումից: Մեծ գրողը «հիվանդանում է»: Բայց գործ բռնողը այն մարդը չէր, որից հեշտ են պրծնում: Մադամ դե Ստալը չէր մեկնում քաղաքից: վերջ ի վերջո, բանաստեղծն ըստիպված էր առողջանալ և ընդունել նրան:

Այդ հարձակումից չի խուսափել նաև Շիլլերը. «Ես զգում եմ,— գրել է նա Գյոթեին, երբ այդ կինն արդեն մեկնել էր,— որ կարծես ապաքինվել եմ հիվանդությունից»:

Նման պայմաններում ավելի վճռական էր Պուշկինը: Մի անգամ, երբ նա Եկատերինոսլավում էր, տեղի հարուստ կալվածատերերը վճռում են հյուր գնալ մայրաքաղաքի նշանավոր մարդուն: Անկոչ հյուրերը ճանապարհից հոգնած Պուշկինին գտնում են ընթրելիս:

— Ի՞նչ եք կամենում, պարոնայք,— տեղից վեր է կենում Պուշկինը:

Նրանք սկսում են մանրամասն բացատրել, որ կամենում են հռչակավոր գրողին տեսնելու պատիվն ունենալ: Եվ «հռչակավոր բանաստեղծը» սրտնեղած, նրանց առաջ բաց է անում այն դռները, որով քիչ առաջ մտել էին.

— Հիմա տեսա՞ք: Դե, ցտեսություն:

Որևէ մեկին հանդիպելիս կամ նրան հյուր գնալիս, պետք է մեկ-մեկ էլ հարց տալ իրեն, թե արդյոք այդ մարդու համար հետաքրքի՞ր է իր հետ լինելը:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*



# Գ Ա Զ Ա Ն Ա Ն Ո Ց Ո Ւ Մ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Կապիկը վերադարձել էր արձակուրդից, տպավորություններ էր պատմում: Նրա վանդակի կողմից սուր ձայներ էին լսվում: Կապիկը ծափ էր տալիս, ծամածռություններ անում, մերթ ձայնը ցածրացնելով՝ խորհրդավոր նայում էր իրեն շրջապատած գազաններին, մեկ կրկին խելակորույս թռչկոտում, գլուխկոնծի տալիս, ճչում:

Փիղը ծանր էր լսում:

— Ի՞նչ է ասում կապիկը,— հարցրեց նա իր ձագուկի հետ կանգնած կովկասյան վայրի այծյամին:

Այծյամն ասաց.

— Արձակուրդից է վերադարձել, տպավորություններ է պատմում:

— Մայրիի՜կ,— մկկաց ձագուկը,— ի՞նչ է արձակուրդը:

Մայրն ախոռից մի քանի չոր ցողուն բերանն առավ, ծամելով ասաց.

— Արձակուրդը, ձակուգս, այն է, երբ պարտավորություններից ազատում են քեզ և դու շրջում ես ազատ, քարափից-քարափ ես ցատկոտում, արածում ես ժայռածերպերի ծաղիկները, խմում առվակի ջուրը և… — կովկասյան վայրի այծյամը չկարողացավ շարունակել, փղձուկը խեղդում էր նրան: Նա շրջվեց ձագուկից՝ դեմքով դեպի հեռավոր սարերն ու լաց եղավ:

— Մայրի՜կ,— կրկին մկկաց կովկասյան վայրի այծյամի ձագուկը,— ի՞նչ է նշանակում՝ քարափից-քարափ ցատկոտել:

Մայր այծյամը դառնորեն ժպտաց. «Այգու արգելանոցի ներսում է ծնվել ձագուկս, ոչինչ չգիտի»,— մտածեց նա, նայեց շուրջը, ապա ձագուկի համար մի քանի անգամ առվակի ձախ ափից աջը ցատկեց, աջից՝ ձախ, օդում աքացիներ զարկեց, սլացավ կենդանաբանական այգու սարալանջով, և մի քանի անգամ աքացիներ զարկեց ու կանգնեց ձագուկի մոտ և, շունչը տեղը բերելով, ասաց.

— Ահա, մոտավորապես, սա է կոչվում քարափից-քարափ ցատկել:

— Հե՜յ ջան, ես էլ եմ քարափից-քարափ ցատկում,— ձայն տվեց ձագուկը և սկսեց մոր մի կողմից մյուսը ցատկոտել.— Հե՜յ, հե՜յ…

Տարիքով գազանները ծիծաղեցին, նույնիսկ հեռվից լսվեց գետաձիու բամբ ձայնը:

Այդ ժամանակ կապիկը կրկին սկսեց ծափ զարկել և այնպես խելահեղորեն ցատկոտեց ու ճչաց, որ նորից գազանները նրա կողմը նայեցին.

— Ի՞նչ է ասում,— հարցրեց ականջից ծանր փիղը:

— Նա ասում է, որ ճանապարհորդել է ավտոբուսով և վարորդից ծածուկ հնչեցրել է ազդանշանային շչակը,— պատասխանեց կովկասյան նախկինում վայրի այծյամը:

Ընթրիքին կենդանաբանական այգու աշխատողը փղի համար սայլակով կաղամբ, գազար, կարտոֆիլ ու այլ բանջարեղեն բերեց և դատարկեց մեծ տաշտակի մեջ: Սակայն փիղը կնճիթն անգամ չմոտեցրեց:

— Ինչո՞ւ ես հրաժարվում,— հարցրեց աշխատողը:



— Որովհետև,— ասաց փիղը,— որովհետև երեսուն տարի նույն տեղում ահա կանգնած եմ, քանի-քանի մարդկանց եմ ուրախացրել ես...

— Առանց արցունքների, խնդրեմ,— ասաց աշխատողը:

— Առանց արցունքների չեմ կարող,— ասաց փիղը փղձկալով,— որովհետև ես հիշեցի մանկությունս: Ինձնով հիացած երեխաները իրենք են ծնողներ դարձել, այցի են գալիս իրենց զավակների հետ, ես նայում եմ նրանց ու լաց եմ լինում, ուհո՜ւ-ուհո՜ւ-ուհո՜ւ...

— Ա՜խ այս նրբազգաց փղերը,— հառաչեց աշխատողը:— Լա՜վ, ինչո՞վ կարող եմ քեզ մխիթարել:

Փիղն արցունքների միջից ասաց.

— Ինչ-որ կապիկների արձակուրդ եք տալիս, իսկ ավելի ծանրակշիռ կենդանիներին մոռանում եք: Ինձ էլ արձակուրդ տվեք, թե չէ՝ վաղվանից պոչի կողմի վրա կկանգնեմ այցելուների առաջ և ոչ ոք ինձ չի կարողանա տեղից շարժել:

— Եվ չե՞ս ամաչի:

— Ոչ: Որովհետև ահա կապիկը արձակուրդային տպավորություններ է պատմում, բոլոր գազանները լսում են, իսկ ես ականջից ծանր եմ, մարդկանց մասին անեկդոտ պատմեց՝ բոլորը ծիծաղեցին, իսկ ես ոչինչ չեմ լսում, միայն լաց եմ լինում, ուհո՜ւ-ուհո՜ւ-ուհո՜ւ...

— Լա՜վ,— հառաչեց աշխատողը,— քեզ էլ արձակուրդ կտամ, լավ,— և գնաց:

Իսկ կապիկը շարունակում էր պատմել: Բոլորը սսկվել էին: Փիղն էլ լարեց լսողությունը:

Կապիկին հաջողվել էր կրկես ընկնել, պատմում էր, թե ինչեր է տեսել այնտեղ:

— Իմ աչքի առջև սղոցելով կիսեցին աղջկան և քիչ անց նա կրկին ցատկեց արկղից ու կանգնեց ողջ և առողջ: Մի կճուճ ջրից աճպարարը հանեց բազմաթիվ աղավնիներ, գույնզգույն ժապավեններ, անձրևանոց, բադեր ու սագեր: Ծաղրածուն այնպիսի հնարանքներ բանեցրեց, որ ծիծաղից թուլացան բոլորը: Զարմանալի ճարպիկ տղաներ ու աղջիկներ ամենաբարդ ու վտանգավոր մարզանքները արին հենց իմ գլխավերևում, ցատկեցին այնպիսի հեռավորության վրա, որ կովկասյան վայրի այծյամն անգամ տեսներ՝ զարմանքից քար կկտրեր: Բայց, իհարկե, ամենազարմանալին վարժեցված կենդանիներն էին՝ արջը, առյուծը, վագրը, փիղը, նաև կապիկը: Նրանք հատուկ դպրոց ունեն, որտեղ երկար ժամանակ վարժվելուց հետո, արժանանում են բեմահարթակ ելնելու պատվին: Մարդիկ նրանց արտիստ են անվանում: Տեսնեիք, թե նրանք ինչպես էին զարդարված գույնզգույն ու գեղեցիկ զգեստներով, տեսնեիք, թե ինչպես էին մարդիկ բուռն ծափերով դիմավորում նրանց ելքն ու մուտքը: Կենդանաբանական այգու բնակիչները զարմանքից քար էին կտրել, նրանք առաջին անգամն էին լսում կրկեսի և արտիստ գազանների մասին:

— Երկար կարելի է պատմել, ասենք, եռյակ փղերի մասին, թե որքան համաձայնեցված էին ելնում նրանք պատվանդանների վրա և ներդաշնակորեն սկսում ելույթը: Մերթ կանգնում էին ետևի, մերթ առջևի ոտքերի վրա, կնճիթով գնդակ էին խաղում, երաժշտության տակ պարում և ելույթից հետո քաղաքավարի գլուխ էին տալիս հանդիսատեսին: Իսկ ինչե՜ր էին անում իմ ցեղակից կապիկները, մարդկանց արարքները կապկելով ի՜նչ ուրախություն էին պատճառում երեխաներին: Նրանք միայն մարդկանց էին կապկում ու ծաղրում: Ոչ մի դեպք չեղավ, որ կապիկը ծաղրի կենդանիներից մեկնումեկին: Առհասարակ կրկես սովածը թե բուսակեր և թե գիշատիչ կենդանիների մի համերաշխ ընտանիք էր: Նրանք գնացքով քաղաքից-քաղաք են տեղափոխվում, տարբեր կրկեսներում են ելույթ ունենում նրանք: Իսկ ամռան երկարատև արձակուրդներին մարդիկ շարունակում են կրթել, վարժեցնել նրանց: Աշնանը նորից բացվում են կրկեսի դռները, երեխաները աշխույժով լցվում են դահլիճ, սկսվում է գազանների զարմանալի ելույթը:

Երկար ժամանակ կենդանիները կապիկի պատմածի տպավորության տակ էին: Այգում լռություն էր, բոլորը լուռ մտածում էին այն զարմանալի, կիրթ, վարժեցված արտիստ-գազանների մասին: Աշխարհում այդպիսի բան է եղել՝ չեն իմացել...

Մինչև լույս կենդանաբանական այգու գազանները երազում էին արտիստի անհասանելի փառք, երեխաների հրճվագին ծիծաղ և գոհունակության բուռն ծափահարություններ:

## ՓԱՌՔ ՔԵԶ

Փառք քեզ, Հայաստան,
Պարտեզ ծաղկավարդ,
Դու մեծ Միության
Զավակ հարազատ:

Թող միշտ շողշողա
Լույսն եղբայրության,
Աղջիկ ու տղա
Ծափ տան ու խնդան:

Գարուն թող լինի,
Արև ու ծաղիկ,
Փա՜ռք քեզ, հայրենի
Աշխարհի գեղեցիկ:

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐԻ ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԵՐԿԻՆՔԸ ՊԱՀՈՂ ԲՈԼՈՃԸ



Գոմաղբի մեջ թավալ-թավալ անող բոլոճը հանկարծ ընկնում է մեջքի վրա և ոտները դեպի վեր ցըցած՝ սկսում է օրորվել: Գալիս է մի ուրիշ բոլոճ և հարցնում է.

— Եղբայր, էդ ի՞նչ ես անում։

— Երկինքը փուլ է գալիս, ոտներս դեմ եմ տվել, որ չընկնի:

## ԳԱՐՇԱՀՈՏ ԲՈԼՈՃԸ



Գարշահոտ բոլոճը կորցրել էր իր ձագին, լաց էր լինում և փնտրում էր նրան: Բոլոճներն ու հավքերը լսելով այդ լուրը, սկսում են ծաղր անել:

Բայեն կանչում, ասում է. «Արի էստեղ, տեսնենք սա քո՞ ձագն է»: Նա դիտմամբ ցույց է տալիս իր գեղեցիկ ձագին:

Գարշահոտ բոլոճն ասում է. «Ո՛ւ, ո՛ւ, էդ անպետքն ի՞նչ է, իմ ձագը սև էր սաթի նման, ցածրագնաց, խիստ անման»:

## ԱԳՌԱՎՆ ՈՒ ԲԺԻՇԿԸ

Ագռավը գնում է բժշկի մոտ և իր ձագի համար դեղ է ուզում: Բժիշկն ասում է. «Գնա մի այնպիսի տերև բեր, որ վրան ագռավի ծերտ չլինի»: Ագռավը գնում, երկար որոնում է, բայց չի գտնում:



## ԿՈՒՌԹԱՆԵՑԻՆ ՈՒ ԱԳՌԱՎԸ



Կուռթանեցին մի ագռավ ձեռին գնում էր: Ասին.

— Այ մարդ, էդ ո՞ւր ես տանում էդ ագռավը:

Ասաց.

— Ասում են, սա երկու հարյուր տարի ապրում է, տանում եմ տեսնեմ կապրի՞:

## ԹՌՉՈՒՆՆԵՐԻ ԹԱԳԱՎՈՐ ԿՌՈՒՆԿՆ ՈՒ ԷՇԸ

Թռչունները հավաքվում են մի տեղ և ասում են՝ «Ում ձայնը որ ուժեղ է, նրան ընտրենք մեկ թագավոր, որպեսզի նա պատերազմի ժամանակ իմաց տա մեկ»: Կռունկը երկինք է բարձրանում և այնտեղից ուժեղ կանչում է: Թռչունները հավանում են նրա ձայնը և ընտրում են իրենց թագավոր: Գալիս է էշը և ասում է. «Այ թե ինձ բարձրացնեք կռունկի տեղը և ոտներիս համար հենարան շինեք, այն ժամանակ կիմանաք, թե ո՞ւմ ձայնն է ավելի ուժեղ»:



---

Սկիզբը՝ «Պիոներ» № 6, 1972։

# ԳՈՂԻ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Դատավորը հարցնում է բռնված գողին.

— Ճիշտն ասա, ինչի՞ համար են քեզ բռնել:

— Հարբուխիս համար, պարոն դատավոր:

— Ինչպե՞ս թե հարբուխիս համար, ցնդե՞լ ես, ինչ է...

— Ականիվ խոսք, ճիշտ եմ ասում: Գիշերը գողություն անելիս ուժեղ փռշտացի, տանեցիք քնած էին, արթնացան, եկան ինձ բռնեցին: Չլվեի հարբուխ. թե չփռշտայի, ինձ չէին բռնի, ես էլ քեզ չէի անհանգստացնի:

(Շարունակելի)



Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

# ՈՒԼԸ ԿՈՐԵԼ ԷՐ

*Մեկին լուր են բերում, թե ուլդ կորել է: Նա կանչում է իր որդիներին ու պահանջում գնալ և, որտեղից էլ լինի, ուլը գտնել բերել:*

*Տղաները հորը չեն լսում, ասում են՝ էս ի՞նչ ծըլատ է մեր հայրը, այսքան ոչխարներ և անասուններ ունի, կեսգիշերին մեզ ուղարկում է ուլ փընտրելու:*

*Առժամանակ անց, հորը լուր են բերում, թե հոտից մի ոչխար էլ է կորել: Նա նորից է կանչում տղաներին, պատվիրում գնալ և ուլը գտնել:*

*Որդիները ո՛չ ուլն են փնտրում գտնում, ո՛չ էլ՝ ոչխարը:*

*Մի քանի օր հետո պարզվում է, որ այս անգամ էլ ձին է կորել:*

*Հայրը նորից է կանչում որդիներին, հարցնում.*

*— Ուլը գտա՞ք:*

*Մի օր էլ լուր են բերում, որ ավազակները ամբողջ հոտը քշել տարել են:*

*Այս անգամ էլ է նա կանչում իր որդիներին ու հարցնում.*

*— Հը՞, այդպես էլ չիմացա՞ք, թե ուլը ինչ եղավ:*

*Տղաները չեն համբերում, ասում են.*

*— Ա՜յ տնաշեն, ավազակները քո ոչխարի ամբողջ հոտն են քշել տարել, դու ո՞ւլն ես ասում փընտրենք:*

*Այդ ժամանակ հայրը բարկանում է տղաների վրա.*

*— Ես էլ գիտեմ, որ ոչխարիս ամբողջ հոտն է կորել: Եթե դուք ժամանակին ուլը գտնեիք, այսօր մենք ոչխարի ամբողջ հոտը չէինք կորցնի:*

*Քրդերենից թարգմ. ԷՄՄԱ ԲԱԿՈՅԵՎԱՅԻ*



# ԱԳՌԱՎԸ

*ՀՈՐՈՍ-ԱՊԵՐ*

**Ագռավը տխրեց.**
**«Ինձ չեն նկատում,**
**Ախ, ինչո՞ւ եմ ես**
**Գորշ ծնվել կյանքում»:**
**Պոկեց աղավնու**
**Թևերը ճերմակ,**
**Կպցրեց կողին,**
**Մեջքին, պոչի տակ:**
**Բազեն նկատեց,**
**Ընկավ ետևից,**
**Արծիվը թափով**
**Իջավ վերևից:**
**Որսորդը փորձեց**
**Ներքևից խոցել,**
**Եվ սկսեցին**
**Նրան հալածել:**
**— Ագռա՛վ եմ, ագռա՛վ,—**
**Ագռավը ճչաց,**
**Ճերմակ փետուրներն**
**Իսկույն թափեց ցած:**
**Արծիվն ու բազեն**
**Հենց որ այդ տեսան,**
**Սաստիկ զարմացած**
**Թողին հեռացան:**
**Ու ագռավն ասաց.**
**— Ինչ եղավ, եղավ.**
**Ագռավ եմ ծնվել,**
**Թող մնամ ագռավ:**

# ԷՍՔԻԼԵՍԻ ՄԱՀԸ

Անտիկ Հունաստանի հռչակավոր բանաստեղծ Էսքիլեսը երիտասարդ ժամանակ որպես զինվոր մասնակցել էր Մարաթոնի, Սալամինայի և Պլատեայի պաշտպանության համար մղված մարտերին: Հետագայում նա թողեց զինվորական ծառայությունը և նվիրվեց գրականությանը: Նրա ժամանակակից պատմիչների կարծիքով, նա գրել է իննսուն ողբերգություն, որոնցից քառասունի համար պարգևատրվել է ժողովրդական մրցանակներով: Սակայն նրա ստեղծագործություններից մեզ հասել է ընդամենը յոթ ողբերգություն: Նրա մի երկում օգտագործված որոշ արտահայտությունները տիրող դասակարգի կողմից համարվում են սրբապղծություն: Այդ պատճառով Էսքիլեսին դատում են և դատապարտում մահապատժի՝ քարկոծման միջոցով:

Էսքիլեսին առաջնորդում են մահապատժի վայրը, կապում՝ մի սյան, և դահիճները պատրաստվում են ի կատար ածել զարհուրելի պատիժը, երբ ամբոխի միջից մի մարդ է դուրս նետվում կանգնում նրա կողքին և գոռում.

— Դահիճնե՛ր, ձեր ձեռքերը մի՛ թաթախեք ձեր համաքաղաքացու արյան մեջ: Աթենացինե՛ր, լսե՛ք ինձ...

Այդ մարդը Ամինեասն էր՝ Էսքիլեսի եղբայրը, մի սպա, որը արիաբար պատերազմել էր պարսիկների դեմ: Նա մի պահ կանգ է առնում, հետո շարունակում.

— Երբ Քսերքսեսը իր ութ հարյուր հազարանոց բանակով արշավել էր Հունաստանի վրա, մեր բոլոր քաղաքներն ու գյուղերը հուսալքվել էին: Մենք շտապ կարգով բանակ կազմակերպեցինք և դիմագրավեցինք թշնամուն: Մենք երդվել էինք կամ մահանալ, կամ էլ հաղթանակով վերադառնալ: Ո՞վ էր ղեկավարում այդ բանակի դիվիզիաներից մեկը: Ո՞վ այդ դիվիզիային դեպի հաղթանակ առաջնորդեց: Ես: Որտե՞ղ է այն ձեռքը, որը ջախջախեց թշնամուն և ետ մղեց զավթիչին: Ես այն թողել եմ մարտի դաշտում... աթենացինե՛ր: Այնուամենայնիվ, հարվածե՛ք, դահիճներ: Մենք մեր արյան մի մասը արդեն թափել ենք ձեզ համար, հիմա վերցրեք մեզանից և մնացածը:

Ամբոխը, որ քարացած լսում էր Ամինեասին, որոտաց.

— Ազատությո՛ւն Էսքիլեսին, ազատությո՛ւն Էսքիլեսին...

Էսքիլեսին անմիջապես արձակեցին և նա իր եղբոր հետ, հազարավոր մարդկանց ուղեկցությամբ տուն վերադարձավ:

Էսքիլեսը իր կյանքի վերջին տարիները անցկացրեց Սիցիլիայում: Նա մահացավ 69 տարեկան հասակում, շատ պատահական ձևով: Մի արծիվ, որը մի կրիա էր օդ բարձրացրել, չկարողանալով այն պահել, բաց է թողնում, որն ընկնում է Էսքիլեսի ճաղատ գլխին և սպանում նրան:

## ԲՌՆՑՔԱՄԱՐՏԻ ՄԱՍԻՆ

Սպորտի հնագույն ձևերից է բռնցքամարտը: Հին Հունաստանի քաղաքացիների դաստիարակության անբաժան մասն էր այն կազմում և մտնում էր օլիմպիական խաղերի մեջ: Պատմիչները հաղորդում են, որ այդ խաղերում հաճախ է հաղթող դարձել նշանավոր մաթեմատիկոս Պյութագորասը: Բռնցքամարտով զբաղվել է նաև Արքիմեդը:

XVIII դարում բրիտանական կղզիներում անց էին կացվում բռնցքամարտի մրցումներ, որտեղ հաղթողը համարվում էր աշխարհի չեմպիոն: Հետաքրքիր է, որ այդ ժամանակ մրցում էին մերկ բռունցքներով: Բռնցքամարտի զարգացմանն ու մասսայականացմանը մեծապես նպաստեցին ձեռնոցները, որոնք գործածության մեջ մտան անցյալ դարի կեսերից: 1867 թ. ընդունվեցին Կվինսբերի կանոնները, որից հետո բռնցքամարտը ստացավ այժմյան տեսքը: Հետագայում այդ կանոնները մասնակի փոփոխություններ կրեցին: Սպորտի այդ ձևով զբաղվել են շատ հռչակավոր մարդիկ՝ Ջորջ Գորդոն Բայրոնը, Ջեկ Լոնդոնը, Էռնստ Հեմինգուեյը, Չառլի Չապլինը:




Երբ Վիլյամ Սարոյանին հարցրին (նա էլ է պատանի ժամանակ զբաղվել բռնցքամարտով), թե ինչո՞ւ է սիրում բռնցքամարտը, անվանի գրողը պատասխանեց.

— Ես պաշտում եմ սպորտի այս առնական ձևը, որովհետև ռինգում, ինչպես ձեռքի ափի մեջ, երևում է մարդու բնավորությունը: Եթե դու իսկական մարդ ես, ապա կարող ես պարտվել՝ չդիմելով արգելված միջոցների: Բռնցքամարտը սիրում եմ նաև այն պատճառով, որ լավագույն մարտերը բարձրանում են արվեստի աստիճանի, և նրանց մանրամասնություններին հետևելը նույնպիսի հիացմունք է պատճառում, որքան Բեթհովենի երաժշտությունը լսելը կամ Ռենուարի լուսաստվերային խաղերը դիտելը...

Բռնցքամարտը մեր հանրապետությունում լայն տարածում գտած մարզաձևերից է: Ամբողջ աշխարհին հայտնի է Եվրոպայի և օլիմպիական խաղերի չեմպիոն Վլադիմիր Ենգիբարյանի անունը: Աշխարհամասի արծաթե մրցանակակիր է դարձել Կառլոս Ջանէրյանը:

Մեր երկրում անցկացվում է Սովետական Միության հնգակի չեմպիոն Լևոն Թեմուրյանի հիշատակին նվիրված բռնցքամարտի մրցումներ:

Վերջին տարիներին Սովետական Միության և սպարտակիադայի չեմպիոններ են դարձել Կամո Սարոյանը, Սուրեն Ղազարյանը և Դավիթ Թորոսյանը:

Երևանում գործող պատանի բռնցքամարտիկների դպրոցը կաշվի ձեռնոցների հայ վարպետներին արժանի փոխարինողներ է պատրաստում:

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



# ՀՆԱՐԱՄՏՈՒԹՅԱՄԲ ԵՎ ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹՅԱՄԲ

Երբ մրցության պայմանները հրապարակվեցին «Պիոներսկայա պրավդա» թերթի 1970 թ. դեկտեմբերյան համարներից մեկում, նրանք՝ Երևանի № 147 դպրոցի 4-րդ «Գ» դասարանում էին սովորում: Մրցությունը վերաբերում էր «Գիտելիքների աշխարհում» երթուղուն: Մրցությանը մասնակցող ջոկատների թիվը հասնում էր տասնյակ հազարների:

Պայմանները քննարկելիս պիոներներից շատերը ուսները տարակուսանքով բարձրացրին: Հարցեր կային այնպիսի առարկաներից, որոնք անցնում են միայն բարձր դասարաններում: Մի պահ նույնիսկ անիմաստ թվաց մասնակցելը: Բայց ջոկատին օգնության եկան դասղեկ Լիդիա Կալինինան ու ուսմասվար Անտոնինա Վասիլինան: Նրանք բացատրեցին, որ հաղթանակը հեշտությամբ ձեռք չի բերվի, որ մրցանակային տեղի արժանանալու համար համառ ու տքնաջան աշխատանք է պետք:

Մրցության այն պահանջները, որ վերաբերում էին հայրերի հետքերով գնալուն, քաղաքի ու դպրոցի պատմությունը գրելուն, նախադպրոցականների ու հոկտեմբերիկների համար հետաքրքիր խաղեր կազմակերպելուն, խաղալիքներ պատրաստելուն, երգեր սովորեցնելուն և նման աշխատանքներին, հեշտությամբ կատարեցին: Դժվարը ֆիզիկայի ու քիմիայի առաջադրանքներին պատասխանելն էր, ժողովրդական կառույցի, հանրապետության հնագույն ու ուշագրավ պատմական հուշարձանների մասին վեկուցագրեր կազմելը:

Սկզբում պարապմունքներ անցկացրին ֆիզիկայից: Ծանոթացան նրա օրենքների ու կանոնների հետ, քիմիայից փորձեր կատարեցին:

Եղածն ու իմացածը չէր բավարարում: Հնարամիտները նորից ելքը գտան: Գրեցին Բյուրական, աշխարհահռչակ ակադեմիկոս Համբարձումյանը սիրով պատասխանեց դպրոցականներին, անհրաժեշտ նյութեր ուղարկեց, խորհուրդներ տվեց: Ֆիզիկային ու քիմիային վերաբերող հարցերին պատասխան տալուց հետո, ռոբոտ պատրաստեցին:

Հիդրոպոնիկայի և հողագործության ինստիտուտ այցելելիս շատ բան իմացան հողագործության, մրգերի ու բանջարեղենների մշակման մասին: Իսկ հրաժեշտ տալուց առաջ ինստիտուտի աշխատակիցները վարունգով ու պոմիդորով հյուրասիրեցին պատանի հնարամիտներին: Նրանք էլ որոշեցին իրենց հերթին հյուրասիրել ժյուրիին: Եվ մարտ ամսին իրենց աճեցրած թարմ վարունգից ու պոմիդորից ուղարկեցին Մոսկվա:

Նախապատրաստվել էին «Արփա-Սևան» ժողովրդական կա-

---

*Արեգակնային համակարգի մոլորակները*

# ՅՈՒՊԻՏԵՐ

Հսկա մոլորակի բնորոշ օրինակ է Յուպիտերը: Ի տարբերություն «Երկրային խմբի մոլորակների» նա ունի մեծ մասսա, համեմատաբար փոքր խտություն (մոտ է ջրի խտության աստիճանին), շատ արբանյակներ, առանցքի շուրջը արագ պտույտ, քիմիական առումով՝ թեթև գազերի՝ հելիումի և ջրածնի առատություն:

Յուպիտերը Արեգակնային համակարգի ամենամեծ մոլորակն է: Ծավալով Երկրից մեծ է 1345 անգամ, մասսայով՝ 318, մակերեսով՝ 122: Տրամագիծը 143 640 կմ է: 778 միլիոն կմ միջին հեռավորությամբ՝ Արևի շուրջը մի պտույտ է կատարում երկրային 12 տարվա ընթացքում: Հետաքրքիր է, որ Յուպիտերը իր առանցքի շուրջը պտտվում է ոչ հավասարաչափ. հասարակածային շրջանում մի պտույտ է կատարում 9 ժամ 50 րոպեում, բևեռային շրջանում՝ 9 ժամ 55 րոպեում: Արևին հակառակ, այդ անցումը տեղի է ունենում ոչ թե աստիճանաբար, այլ թռիչքաձև:

Յուպիտերը նույնպես ունի խիտ ամպերով հագեցած մթնոլորտ: Բարձր ճնշման և ցածր ջերմաստիճանի՝ —200°, հետևանքով, գազերը խտանում են, կարծրանում և դառնում պինդ մարմիններ: Գիտնականների կարծիքով, դա կարող է տեղի ունենալ 700000 մթնոլորտ ճնշման դեպքում: Յուպիտերի վրա քիմիական էլեմենտները գտնվում են մեզ անհայտ վիճակի մեջ, քանի որ բարձր ճնշումը քայքայում է նրանց մոլեկուլային կառուցվածքը, խախտում էլեկտրոնների պտույտը ատոմի մեջ:

Նույնիսկ փոքր հեռադիտակով, Յուպիտերի հասարակածային շրջանում կարելի է տեսնել պայծառ մասերով իրարից բաժանված մուգ շերտեր և այստեղ-այնտեղ փայլփլող վարդագույն, սպիտակ, սրճագույն բծեր: Ամենանշանավոր գոյացությունը սև բիծն է՝ 50 000 կմ երկարությամբ, 10 000 կմ լայնությամբ անհայտ բաղադրություն ունեցող վիթխարի ամպը, որը առաջին անգամ 1640 թ. տեսավ Կասինին: 1870 թ. սև բիծը արտակարգ պայծառ էր: 1882 թ. սկսեց խամրել, ապա անհետացավ:

Յուպիտերի տասներկու արբանյակները հայտնագործվել են տարբեր ժամանակներում: Ամենամեծերը՝ Յոն, Եվրոպան, Հանիմեդը և Կալիստոն 1610 թ. հայտնագործեց Գալիլեյը, հինգերորդը՝ Ամալթեան, Բեռնարդը, 1892 թ.: Մյուս արբանյակները անուններ չունեն: Վերջինը հայտնագործվեց 1951 թ.:

ռույց գնալ, ծանոթանալ թունելագործների հետ, անհրաժեշտ տըվյալներ վերցնել: Նրանց առարկեցին, ասացին, որ լեռներում շատ ցուրտ է: Սպասել հնարավոր չէր. հարցերը շատ էին, իսկ ժամանակը թռչում էր:

Դրությունից դուրս գալու միջոցը գտան: Գնացին ջրատարի վարչություն: Վարչության գլխավոր ինժեները պատմեց ջրատարի նշանակության մասին, ցույց տըվեց կատարվող աշխատանքների նախագծերն ու գծագրերը և անհրաժեշտ բացատրություններ տըվեց, իսկ վերջում պիոներներին նվիրեց հորատողների սաղավարտներ:

Հավաքած նյութերը, տվյալներն ու պատասխանները փոստով էին ուղարկում: Պատանի հնարամիտներին չէր գոհացնում այդ միջոցը: Կային ուղարկվելիք նյութեր, որոնք հոգատար ձեռք ու կարճ ժամանակ էին պահանջում: Օգնության եկան օդաչուները, արին նրանց ուզածը: Կապը մրցույթի ժյուրիի հետ արագացավ:

Հայաստանը հարուստ է պատմական հուշարձաններով: Բոլորը ուսումնասիրել հնարավոր չէր: Պատանի հնարամիտները նպատակահարմար գտան ուսումնասիրել և մրցույթի ժյուրիին ուղարկել հնագույն Էրեբունի բերդի ու 7-րդ դարի հայ ճարտարապետության գլուխ-գործոց Զվարթնոցի եռահարկ տաճարի պատմությունը:

№ 147 դպրոցի անվան դիմաց նորանոր նյութեր էին ավելանում: Վերջին պայմանը ջոկատով որևէ մարզաձևի մասնակցելն էր: Ընտրեցին ֆուտբոլը: Աղջիկները լավ էին նախապատրաստվել այդ մըրցապայքարին և տղաների դարպասը անընդհատ կրակի տակ պահեցին: Կարևորը այն չէր, թե ինչպես վերջացավ հանդիպումը, այլ այն, որ մարզասերները մեծ բավականություն ստացած հեռացան մարզադաշտից:

Աչթևային ջոկատը երկար չըսպասեց արդյունքներին, շուտով եկավ պատասխանը, գրաված մըրցանակային տեղը իրականացրեց վաղեմի երազանքը, և մեկ ամիս նրանք իրենց հանգիստը անցկացրին համամիութենական «Արտեկ» պիոներական ճամբարում:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ





# ՇԱՀՄԱՐ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Անունը հին պարսկերեն է՝ նշանակում է արքա-օձ (շահ-թագավոր, մար-օձ):

Խոշոր է, շատ խոշոր, ամենից խոշորն է Հայաստանի օձերի մեջ. երկարությունը հասնում է մինչև 250 սանտիմետրի: Այնպես որ եթե մեկն ասում է, թե «մի գերանի չափ» վիշապ է տեսել, իմացեք, որ շահմարն է, որը իրոք գերանի չափ չէ, բայց վախկոտի աչքին կարող է գերանի չափ երևալ:

Թիկունքի կողմից նա լինում է թխածիթապտղագույն կամ դեղնաձիթապտղագույն: Գլուխը խոշոր չէ և թույլ կերպով է սահմանազատված վզից:

Շատ արագաշարժ և շատ կատաղի օձ է: Նաև հանդուգն է, կռվարար, անվախ: Քիչ չեն դեպքերը, երբ ֆշշոցով հարձակվում է մարդկանց և կենդանիների վրա, կծում է նրանց, բայց որովհետև անթույն է, լուրջ վնասել չի կարող: Երբեմն սուրալով անցնում, անհետանում է քամու նման, երևի այդ պատճառով էլ պարսիկները շահմարին ասում են քամի-օձ(«էլ-մար»): Հետապնդվելիս, երբ թաքստոց չի գտնում, կծիկ է դառնում և թունավոր օձի նման ցատկում մարդու վրա: Երբ հաջողեցնում է, կծում է, ցավեցնում, արյուն հանում:

Ես առիթներ եմ ունեցել հանդիպելու այս սողունին իր բնական միջավայրում՝ խճոտ տեղերում, անջրդի տափաստաններում, աղքատ թփուտներով ու բույսերով ծածկված բլուրների արևոտ լանջերին, հին այգիների կավաշեն պատերի տակ կամ ավերակներում:

Ամեն հանդիպելիս ես տեսել եմ նրան անհանգիստ, տպավորվող, շարժուն վիճակում. թմրած ու անտարբեր նա երբեք չի լինում: Ինչպես որ հովազն ու վագրն են կատվազգիների մեջ, այնպես էլ շահմարն է սողունների մեջ. նրանց նման սիրուն և նրանց նման աներկյուղ, ճկուն, համարձակ: Իմ ընկեր Հայրիկ Մուրադյանը մի անգամ ինձ պատմեց հետևյալը.

Ամառ էր: Արտաշատի բլրալանջերից մեկի ստվերոտ ժայռի տակ ճաշի էինք նստել: Մեզնից ոչ հեռու՝ ցածում կարկաչում էր աղբյուրը: Դիմացի բլուրների վրա մեր անասունները ցրիվ եկած արածում էին: Մեր ընկեր Լևոնը մոտեցավ աղբյուրին, սակայն դեռ ջրի վրա չկռացած, ետ եկավ այլայլված.

## ՏԵՐԵՎՆԵՐԸ

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

Ծառի որդիներն են
Տերևները բոլոր,
Տերևները բոլոր
Ծառի որդիներն են:
Հեռանում են նրանք,
Չեն ճանաչում մորը,

Եվ աշխարհ է, գալիս
Ամեն տարի նորը:
Հավաքվեին մի օր
Ծառի որդիները
Եվ թվեին մեկ-մեկ
Իրենց անունները:





— Օ՛ձը, օ՛ձը...

Ոտքի կանգնեցինք և մահակներով զինված՝ օղակեցինք սողունին: Թփուտի կենտրոնում, գլուխը համարձակորեն վեր տնկած մեզ էր նայում թուխ մեջքով մի բարակ օձ: Դեղնակարմիր մի շերտ սրածայր դնչից սկսած, փորի տակով գնում էր մինչև պոչը: Արհամարհելով իրեն շրջապատող հոտաղների ներկայությունը՝ նա շարունակում էր հպարտորեն վեր պահել գլուխը:

Առաջին իսկ հայացքից իմ մարմնով սարսուռ անցավ: Մինչդեռ հոտաղներն ինձ քաջալերում էին.

— Զագ է, բոնի՛ր, մի՛ վախենա:

— Չէ՛, տղանե՛ր,— ասացի,— հեռանանք, թող նա գնա իր ճամփով, մենք էլ՝ մեր:

— Վախեցա՞վ, վախեցա՞վ,— վրա տվին ամեն կողմից:— Ամո՛թ:

Ստիպված բարձրացրի մահակս և վրա բերի սողունի գլխին: Բայց օձը զարմանալի ճարպկությամբ խուսափեց իմ հարվածից և կանգնելով պոչի վրա՝ սուր ֆշշոց արձակեց:

Ընկերներս սարսափահար ծլկեցին, կտրվեց նաև իմ թափը: Սողունը դուրս նետվեց թփից և սկսեց հետապնդել ինձ: Ես ամբողջ թափով սլանում էի բլուրն ի վեր: Սարսափը պատել էր ինձ, մտածում էի, որ հիմա կհասնի ու կխայթի, այն ժամանակ չգիտեի, որ շահմարը թունավոր չէ: Բլրի կեսից շուռ եկա և նորից վրա բերի մահակս, բայց նա վարպետորեն խույս էր տալիս իմ հարվածներից:

Հուզմունքից ու հոգնածությունից ծնկներս դողում էին: Եղավ մի պահ, երբ թշնամիս օղակ-օղակ սկսեց կծկվել. գազազած օձը պատրաստվում էր թռչել վրաս, բայց կանխելով նրա թռիչքը՝ ես վրա բերի ծանր մահակս, այս անգամ արդեն կծիկի վրա...

Չիմանալով, որ անթույն, օգտակար սողուն է շահմարը, հանդիպողը ամեն կերպ աշխատում է վերջ տալ նրա կյանքին:

Այժմ, երբ մենք արդեն բավականաչափ ծանոթ ենք շահմարի թե՛ տեսքին, թե՛ վարքին, մեզ համար հասկանալի կդառնա, թե ինչու ժողովուրդը նրան օձերի թագավոր տիտղոսն է տվել: Դե որ բոլորից խոշոր է, բոլորից ուժեղ, բոլորից ահեղ, բոլորից հանդուգն ու հարձակողական տենչով բռնված, հարմար է, որ նա՛ լինի օձերի թագավոր: Եվ ժողովուրդը իր վառ երևակայությամբ հուրհրան թագ էլ է դրել այդ օձի գլխին, իշխան ու հրամանատար էլ է կարգել բոլոր օձերի վրա: Եվ պատահական չէ, որ իր հորինած հեքիաթներում շահմարն է, որ օձերի զորքերի գլուխն անցած՝ կռվի է գնում հակառակորդ բանակների դեմ: Շահմարի այդ «արքայական» վարքի մասին պատմությունները արտահայտում են հին, սնոտիապաշտ մարդկանց ակնածանքը, հարգանքըն ու երկյուղը այդ զորեղ ու կատաղի սողունի նկատմամբ:

Շահմարը սնվում է մորեխակերպ միջատներով, մողեսներով, մանր թռչուններով, ձվերով, թռչնաձագերով: Օգտակար է նրանով, որ ոչնչացնում է մկնակերպ կրծողներին, պատահում է, որ սպանում է նաև թունավոր օձերին: Գիշերները նրա օթևաններն են՝ մկների, խլուրդների բները, քարերի ճեղքերը: Հունիսի վերջին—հուլիսի սկզբներին ածում է 7—8 ձու (գուցե և ավելի): Ձվերի երկարությունը հասնում է 5 սանտիմետրի:

Շահմարը տաք վայրերի բնակիչ է. լեռներում, լեռնային սարահարթերում, Հայաստանի հյուսիսային մասերի անտառապատ վայրերում շահմար չի հանդիպում: Նրա հայրենիքը Արաքսի հովիտն է և նրա ձախ վտակների հովիտները՝ մինչև 1400 մետր բարձրությունը ծովի մակերևույթից:



արդկությունը արագ տեմպերով է աճում: Գիտնականները սկսել են տագնապով մտածել ապագայի մասին: Ինչո՞վ և ինչպե՞ս կերակրել մարդկանց մի քանի հարյուրամյակ հետո: Չէ՞ որ այսուհետև յուրաքանչյուր 35 տարին մեկ երկրագնդի բնակչությունը կրկնապատկվելու է: Մեր մոլորակի վրա այժմ ապրում է 3,5 միլիարդ մարդ: 2000 թվականից հետո այդ թիվը կհասնի 7 միլիարդի: Իսկ այնուհետև՞...

Ներկայումս երկրագնդի բնակչության 25 տոկոսը խրոնիկական սովահարության վտանգի առաջ է կանգնած: Սպիտակուցային սովը իրեն զգացնել է տալիս: Տնտեսապես թույլ զարգացած մի շարք երկրներում մարդիկ ծնվում, ապրում և մահանում են, առանց մսի համը տեսնելու:

Այժմ գիտնականները շատ են խոսում այդ հարցի մասին: Համարյա բոլոր երկրներում միջոցներ են որոնում սովի վտանգը կանխելու համար: Պետք է ասել, որ միջոցները շատ են ու բազմապան: Լուծվում է սինթետիկ սննդամթերքի հարցը: Նավթից միս և խավիար են ստանում: Լուծվում է օվկիանոսների անբավ հարստության՝ ջրիմուռների օգտագործման հարցը: Լուծվում է նաև բույսերի բերքատվությունը տասնապատիկ ու հարյուրապատիկ անգամ բարձրացնելու հարցը: Մարդկանց սննդի համար օգտագործում են նորանոր բարձր մթերատու բույսեր:

Ահա այդպիսի բույսերից մեկն էլ խլորելլա (կանաչուկ) կոչվող ջրիմուռն է, որի հետ գիտնականները ներկայումս մեծ հույսեր են կապում:

Դա միկրոսկոպիկ միաբջիջ բույս է: Մեկ խորանարդ սանտիմետր ջրի մեջ պարունակվում են խլորելլայի միլիոնավոր բջիջներ:

# ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԸ ԻՆՉՈՎ ԵՎ ԻՆՉՊԵՍ ԿԿԵՐԱԿՐՎԻ ԱՊԱԳԱՅՈՒՄ




*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Նրա չափերը որոշվում են միկրոններով, այսինքն միլիմետրի հազարերորդական մասերով: Սակայն կարևորը դա չէ: Կարևորը այն անբավ հարստությունն է, որ այդ միկրոսկոպիկ օրգանիզմը պարունակում է իր մեջ: Կենսաքիմիկոսները պարզել են, որ խլոռելլան հարուստ է սպիտակուցներով, շաքարներով, ճարպերով, վիտամիններով, հանքային աղերով, այսինքն բոլոր այն նյութերով, որոնք անհրաժեշտ են մարդու գոյության համար:

Զափազանց հետաքրքիր է նաև խլորելլայի մի այլ հատկությունը. նա խիստ կգայուն է շրջապատի փոփոխությունների նկատմամբ և այդպիսի փոփոխությունների դեպքում փոխում է իր կազմը:

Սակայն խլորելլան միայն այդ հատկանիշների շնորհիվ չի գրավել գիտնականների ուշադրությունը: Պարզվում է, որ այն ընդունակ է բազմանալու չտեսնված արագությամբ: Արևի կողմից առատորեն լուսավորված ջրում խլորելլան արագ կերպով բաժանվում է 4, 8, 16 մասերի և այդպես անվերջ: Նոր ստեղծված բջիջները սնվում են ջրում լուծված հանքային աղերով, ածխաթթու գազով և օգտագործելով արեգակի էներգիան, ստեղծում են ճարպեր, սպիտակուցներ, ածխաջրեր, վիտամիններ և այլն, անջատելով մեծ քանակությամբ մաքուր թթվածին: Հատկապես արժեքավոր է խլորելլայից ստացված $B_{12}$ դեղանյութը, որը խիստ օգտակար է սպիտակարյունությամբ տառապող հիվանդների համար:

Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, մեկ քառակուսի մետր տարածությունից կարելի է ստանալ խլորելլայի 70 գր չոր մասսա: Դա նշանակում է, որ 1 հեկտար խլորելլայի պլանտացիան կարող է տալ 700 կգ չոր մասսա: Ըստ սպիտակուցների պարունակության, խլորելլայի 1 հեկտար տարածությունը համասարարժեք է 25 հեկտար ցորենի ցանքսին և 10 հեկտար կարտոֆիլի բերքին: Այդ ջրիմուռը այնքան արագ է բազմանում, որ 1 լիտր ջրից ընտացվում է 55 գրամ չոր նյութ: Խլորելլան օգտագործում է արեգակնային էներգիայի 25—30 տոկոսը, այն ժամանակ, երբ ծաղկային բույսերը օգտագործում են միայն 7—13 տոկոսը:

Խլորելլայի այս հատկությունը գրավել է նաև տիեզերագնացության հարցերով զբաղվող մասնագետների ուշադրությունը: Եվ դա հասկանալի է: Որպեսզի մարդը տիեզերական հեռավոր ճանապարհորդություններ կատարի, նրան հսկայական քանակությամբ սնունդ և թթվածին է հարկավոր: Սակայն մի քանի տարի տևող տիեզերական թռիչքների դեպքում այդքան սնունդ և թթվածնի պաշար վերցնելը գործնականում միանգամայն անհնարին է: Պատկերացնո՞ւմ եք. այստեղից մինչև Մարս մեկնելը և վերադառնալը լավագույն դեպքում կտևի 3 տարի: Այդ ժամանակամիջոցում 5 հոգուց բաղկացած անձնակազմի համար անհրաժեշտ կլինի միայն 27 տոննա սննդամթերք, էլ չենք խոսում թթվածնի պաշարների մասին:

Սակայն այլ բան է խլորելլան: Հաշված է, որ մեկ մարդուն օրվա ընթացքում 500 գր խլորելլայով կերակրելու դեպքում, նրա կենսական բոլոր պրոցեսները նորմալ կընթանան: Նշանակում է, եթե դեպի Մարս ուղևորվող տիեզերանավում տեղավորենք ջրով լցված 50 լիտրանոց անոթ, որի մեջ հնարավոր լինի խլորելլա աճեցնել, ապա կստացվի այնքան սննդամթերք, որը լրիվ կբավականացնի տիեզերանավի 5 հոգուց բաղկացած անձնակազմի սննդի և թթվածնի բոլոր պահանջները: Որպեսզի տիեզերագնացի սնունդը միատարր չլինի, պետք է վերցնել նաև որոշ քանակությամբ պահածոյացված սննդամթերքներ: Խլորելլայի համար որպես սնունդ կարելի է օգտագործել տիեզերագնացների բնական արտաթորանքները, նախօրոք անհրաժեշտ քիմիական վերամշակման ենթարկելով դրանք: Այսպիսով, տիեզերանավում ստեղծվում է կենսաբանական փոքր շրջանառություն,




*Հեռավոր մի շրջանից իններորդ դասարանցի մի տղա գրել է. «Խնդրում եմ ստուգել «Անավարդ ծանոթություն» իմ փոքրիկ պատմվածքը և եթե հնարավոր է տպագրել»: Տպագրել, իհարկե, հնարավոր չէր: Նրա գրածը պատմվածք էլ չէր: Տղան նկարագրել էր իր հետ կատարվածը, որը հուզել էր նրան, տարակուսանք պատճառել: Ընդհատված նամակագրության մասին էր գրել տղան, այն մասին, թե ինչպես մի ուրիշ շրջանից իններորդ դասարանցի մի աղջիկ նամակ էր գրել նրան դասամատյանի համարով: Տղան ուրախությամբ պատասխանել էր: Սկսվել էր սովորական մի նամակագրություն: Միմյանց գրել էին իրենց դասերի, ընկերների, ընտանիքի մասին: Հետո տղայի նամակները մնացել էին անպատասխան: Տղան այնպես էլ չէր հասկացել, թե ինչու աղջիկն այլևս չի պատասխանում իրեն:*

«Չէի հասկանում ինչու այսպես նա դադարեցրեց գրել նամակ մանավանդ իմ նամակներս ավելի բովանդակալից էին որ պատասխան չգրել միանգամայն մեծ մտքերի հետ էր կապված»:

*Տղայի նամակը լի է նման արտառոց սխալներով, անհեթեթ մտքերով: Հաճախ նույնիսկ չի հասկացվում, թե ինչ է նա ուզում ասել: Պարզ չէ՞, որ աղջըկան հիասթափեցրել էին տղայի նամակները: Նա իրավացիորեն զգացել էր, որ այդպիսի նամակներ գրողը չի կարող լինել ընդունակ, զարգացած, խոր հոգու տեր, հետաքրքիր անձնավորություն ,այդ պատ-*

---

ապահովելով «սննդի նորմալ շըղթան»:

Սակայն դա ապագայի հարց է: Մենք այժմ մտածում ենք երկրի մասին:

Ճապոնիայում ներկայումս խլորելլա են աճեցնում տանիքներում կառուցված հատուկ ջրավազաններում: Այստեղ արդեն խլորելլա-:ից մի քանի տեսակի համեղ ճաշեր են պատրաստում: Չոր խլորելլան այստեղ օգտագործում են նաև որպես կեր թռչունների, անասունների և ձկների համար: ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Բելգիայում և այլ երկրներում խլորելլայի գործարաններ են կառուցում:

Գիտնականները ավելի հեռուն են տեսնում: Նրանք նախագծում են հատուկ տներ, որոնք պետք է տեղադրվեն պանապան մոլորակների և բնական արբանյակների վրա, որտեղ ապակեպատ գմբեթների տակ, երկրից բերված ջրի մեջ խլորելլա աճեցնելով կարելի է լուծել տիեզերաբնակների սննդի և թթվածնի հարցը:

Պատահական չէ, որ 1960 թըվականին տիեզերական փորձերի ժամանակ շների, այլ կենդանիների և բույսերի հետ միասին արհեստական արբանյակով տիեզերք ուղարկվեց նաև խլորելլա:

Ներկայումս ԱՄՆ-ում նախագծվում են խլորելլայի մի շարք խոշոր գործարաններ: Դրանցից մեկը տեղավորված կլինի Միսիսիպիի գետաբերանում: Գործարանը օրական կարտադրի 30 տոննա խլորելլա, որը կպարունակի 50 % սպիտակուցներ: Տարեկան կստացվի խլորելլայի այնքան մեծ քանակություն, որը իր սննդային արժեքով հավասար կլինի 35 հազար տոննա տավարի մսի: Դրանով կարելի է կերակրել ավելի քան 3 միլիոն մարդու: Այս բոլորին պետք է ավելացնել նաև այն, որ խլորելլայի գործարանները ցամաքում տեղ չեն զբաղեցնի: Դրանք կարելի է կառուցել օվկիանոսների և ծովերի վրա:

Խլորելլան նաև բնության մեծ պաշտպան է: Ամեն տեսակի աղտեղություններով վարակված ջրի մեջ խլորելլա աճեցնելու դեպքում, այն միանգամայն անվնաս է դառնում ձկների և պանապան ջրային օրգանիզմների համար:

Խլորելլայի նկատմամբ մեծ ուսումնասիրություններ են կատարվում նաև մեր երկրում: Շուտով մեզ մոտ ևս կսկսեն գործել մթերատու առաջին գործարանները:

Անշուշտ, խլորելլան բնության մեջ եզակի չէ: Նման բույսեր շատ կան: Գիտնականները մեծ համբերությամբ որոնում են դրանք: Շուտով կլսենք նոր, էլ ավելի հրաշալի բույսերի մասին, որոնք իրենց արժանիքներով կգերազանցեն անգամ խլորելլային:

Ահա թե ինչու, իզուր են այն տագնապները, որ իբր մարդկությունը կանգնած է սովի շեմին:

*ճառով էլ չէր կամեցել նրա հետ շարունակել նամակագրական կապը:*

«Ես էլ չհասկանալով խնդրի պահանջը, պատճառաբանությամբ գրեցի պատասխանը և ցանկացա ավելի իմաստալից գրել այն»—*գրում է տղան մեզ: Իր այս նամակը նա ավարտել է այսպես.* «Մի կործ կամ ուրիշ պան թերի կմնա լավ չի ստացվի անգամ հետական: Ես շատ ուրախ կլինեի եթեթե չխզվեր մեր նամակագրական կապը: Որոշ տեղեկություններ և հեղաշրջումներ կլսէի նրա կողմից ու այսպիսով երջանիկ կլինեյի այս գործում»:

*Տղային մենք նամակ ուղարկեցինք և բացատրեցինք, թե ինչու չի տպագրվում իր «պատմվածքը» և ինչը կարող է լինել պատճառը, որ նրա ընկերուհին դադարել է նամակներ գրել: Թերևս այս մասին այլևս հարկ չլիներ խոսել հրապարակով, եթե խմբագրությունը հաճախակի չստանար այս կարգի անփույթ, վատ ձեռագրով, կոպիտ տառասխալներով գրված նամակներ: Դրանց հեղինակներից շատերը չգիտեն, թե ինչպես պետք է նամակ գրել, մանավանդ պաշտոնական նամակ: Խմբագրությունը ստանում է բազմաթիվ նամակներ այսպիսի վերնագրերով. «բարևագիր», «կարոտագիր», «ծանոթագիր», երբեմն էլ երեքը միասին՝ «Բարևագիր, կարոտագիր, համբյուրագիր, չունեմ ուրիշ վերնագիր»:*

*«Նախ և առաջ ընդունեք իմ սրտից քաղցր բարևներ,— խմբագրությանը»—- գրում է Հոկտեմբերյանից 6-րդ դասարանցի Ռ. Գ.-ն:*

*Ուրիշներն էլ տառապում են քաղցրախոսությամբ, ձգտում են գեղեցիկ գրել և ստացվում է վերամբարձ ու ծիծաղելի. «Ուղարկում եմ ձեզ իմ հարգանաց ողջույնները», «գրել եմ սև թանաքով, ոսկե խոսքով»:*

*«Բարևագիր» գուցե կարելի է գրել ընկերոջը կամ բարեկամին, թեև այսօր դա ծիծաղելի է հնչում, այդպես գրում էին շատ ու շատ հնում, մեր կիսագրագետ պապերն ու տատերը: Իսկ պաշտոնական հիմնարկներին ու անձանց դիմելիս, պահանջվում է գրել առանց ավելորդաբանությունների, սեղմ, հակիրճ, առանց քաղցրախոսության ու շողոքորթաբար բարեմաղթությունների, հաճոյախոսությունների անելու:*

*Ահա մի նամակ ևս, որ մեջբերում ենք ամբողջությամբ. գրել է իններորդ դասարանցի մի տղա:*

«Հարգելի «Պիոների» խմբագրությանի բաժնի վարչին: Ես ահա քանի՞-քանի՞ անգամ է ինչ ուղարկում են բանաստեղծություններ, բայց դուք ինձ գրական արժեքներ չեք տալիս դեպի պոեզիան: Չգիտեմ ինչու այդպես Ձեր մոտ չի ստացվում իմ ստեղծագործության առաջ շարժումը: Ահա ուղարկում եմ մի ոտանավոր, որը նվիրել եմ աշնանը «Աշնանային» վերնագրով, եթե ունի գրական արժեքներ խնդրում եմ տպագրեք»:

*Մի ուրիշը խնդրել է իր բանաստեղծությունը «մտցնել» «Պիոների» մեջ, երրորդը գիտե, որ սխալներով է գրում և մեծահոգաբար թույլ է տալիս.* «Կարող եք սխալներս ուղղել և տպագրել»:

*Գագրա քաղաքից Ա. Գ.-ն գրում է.* «Սովորում եմ 10-րդ դասարանում Լավիկ կոմերիտական եմ 17-ամյա: Ուզեցի հիմա էլ մի քանի ստեղծագործություններ ուղարկել, որպեսզի գրի առնեք ձեր «Պիոներ» ամսագրում»:

*Այսպիսի նամակների հեղինակները, պարզ է, գրող կամ բանաստեղծ դառնալ չեն կարող: Բայց այդ չէ ցավալին: Նրանք կմեծանան, որևէ մասնագիտություն ձեռք կբերեն, այնքա՜ն շատ ասպարեզներ կան հասարակությանն օգտակար լինելու համար: Ցավալին այն է, որ այս անգրագետ նամակների հեղինակները մեծանալուց հետո էլ անգրագետ կմնան, գրագիտություն ձեռք բերելու տարիքը հիմա է, տեղը՝ դպրոցը: Հետո շա՜տ ուշ կլինի:*

Մարտի ութը տոնական կեցես
Մայրիկ քաղցրական:

*Այս տողերի հեղինակը, իհարկե, բանաստեղծ չի դառնա, բայց պետք է ջանա գրագիտություն ձեռք բերել, որ գոնե օգտակար լինի այլ ասպարեզներում:*

*Զարմանալի է, որ բոլոր այս վատթարագույն նամակների հեղինակները հավատացնում են, թե իրենք գերազանցիկ են կամ առնվազն հարվածային: Նամակներից ստացած վատ տպավորությունը ավելի է ուժեղանում, որովհետև մտածում ես, որ նրանք նաև ստախոս և պարծենկոտ են: Յուրաքանչյուր նամակ նրա հեղինակի պատկերն արտացոլող հայելի է: Եթե նամակի վերջում անմիտ, գռեհիկ քառյակներ են գըրված, նկարված են ծաղիկներ, սիրամարգեր, միմյանց միացած ձեռքեր, ծրարը կտցին առած աղավնիներ, խոսում են նամակը գրողի վատ ճաշակի մասին:*

*Խմբագրությունը, իհարկե, ստանում է շատ խելացի ու գրագետ նամակներ: Բայց որքան լավ կլիներ, եթե բոլոր նամակները այդպիսին լինեին, գըրվեին խնամքով, մաքուր, տրամաբանված, գեղեցիկ հայերենով, ավելորդաբանություններից զերծ, հակիրճ, և սեփական անձի ու դիմացինի նկատմամբ հարգանքի, արժանապատվության խոր զգացումով:*

*ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ*

# ԲԱՑ ՆԱՄԱԿ
# «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտը, ակադեմիայի նախագահությանը կից գիտա-մեթոդական խորհուրդը, ինչպես և ձեր ամսագրի և «Պիոներ կանչ»-ի խմբագրությունները երբեմն նամակներ են ստանում պիոներ-դպրոցականներից, որոնք մեծ հետաքրքրություն են ցուցաբերում հայ ժողովրդի պատմական հուշարձանների նկատմամբ՝ հայտնելով, որ իրենք իրենց ուսուցիչների ղեկավարությամբ տեղերում հնագիտական պեղումներ են կատարում՝ դըպրոցներին կից թանգարաններ հիմնելու կամ հիմնված թանգարանները հնագիտական նյութերով հարստացնելու նպատակով։

Բարձր գնահատելով պիոներ-դպրոցականների հետաքրքրությունը մեր ժողովրդի անցյալի. պատմության և նյութական մշակույթի նկատմամբ, միաժամանակ անհրաժեշտ ենք համարում հայտնելու հետևյալը. Սովետական Միության մեջ գործող օրենքների և կարգի համաձայն, պեղումներ կատարել թույլատրվում է միայն մասնագետ-հնագետներին, մեթոդական խորհրդի կողմից, պաշտոնական գրությամբ՝ բաց թերթիկով, առանց որի պեղումներ կատարելու իրավունք չունեն նույնիսկ փորձված հնագետները։ Հետևաբար, տեղերում պեղումներ կատարելը խստիվ արգելվում է նաև ուսուցիչներին և պիոներ-դպրոցականներին։

Պեղումները կատարվում են հատուկ եղանակով և կարգ ու կանոնով, որոնք պահանջում են մասնագիտական պատրաստություն, փորձ և նյութերի ըստ կոմպլեկտների լուսանկարում, սահմանված ձևով գրանցումներ և այլն։

Պեղումների նպատակը սոսկ հնագիտական նյութեր հայտնաբերելը չէ։ Առանց պեղումների կարգ ու կանոնը պահպանելու հայտնաբերված նյութերը կորցնում են իրենց գիտական արժեքը և ուսումնասիրության համար պիտանի չեն լինում։ Բացի այդ, առանց թույլտվության (բաց թերթիկների) պեղումներ կատարելը դուռ է բացում նաև պատահական մարդկանց՝ հուշարձանները փչացնող չարամիտների առջև, նրանք փորփրում են, ավերում հուշարձանները և որպես կանոն ոչնչացնում կամ անհետացնում են գիտության համար կարևոր բրոնզե, երկաթե, քարե զենքերն ու գործիքները, կավե ամանները, և այլ հնագիտական նյութեր։

Այս ամենը հաշվի առնելով՝ վերադաս մարմինները, ինչպես նշվեց, արգելվում են առանց թույլտվության պեղումներ կատարել։

## ՌԵԲՈՒՍ



Կարդացեք չորս թռչունի անուն

*Առաջարկ՝ ՎԱՀԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

## ՆԱԽՈՐԴ ՀԱՄԱՐԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

*1. Ավստրալիա աշխարհամասում է, որ գնալով հյուսիս ավելի է տաքանում, որովհետև գտնվում է Հարավային կիսագնդում։ Հետևապես հյուսիս գնալով ավելի ենք մոտենում հասարակածին։*

*2. ՍՍՀՄ-ի եվրոպական մասի հյուսիսում են գտնվում հետևյալ քաղաքները ,որոնք իրենց անունները ստացել են այն գետերից, որոնց ափին գտնվում են։ Դրանք են Օնեգա և Մեզեն քաղաքները՝ Արխանգելսկի մարզում, Պեչորա, Ուխտա և Վորկուտա քաղաքները՝ Կոմի ԻՍՍՀ-ում։*

*3. Հյուսիսային Երկիր կոչվող արշիպելագում, որը գտնվում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսում, Լապտևների և Կարայի ծովի սահմանում։*

*4. Աշխարհի ամենաերկար լեռնային սիստեմը Կորդիլերներն են, որոնք ձգվում են խաղաղ օվկիանոսի երկարությամբ՝ Հյուսիսային և Հարավային Ամերիկաների ափերով, Ալյասկայից մինչև Հրո երկիր։ Ի դեպ, Հարավային Ամերիկայում Կորդիլերները հայտնի են Անդեր անունով։ Կորդիլերները համարվում են մեր մոլորակի պարծանքը։ Ընդհանուր երկարությունը հասնում է տասնութ հազար կիլոմետրի։ Կորդիլեր անվանումը իս-*

Լինում են և այլ դեպքեր, երբ հողերը, այգիները մշակելիս կամ շինարարական աշխատանքների ժամանակ երևան են գալիս հին ժամանակների շենքերի մնացորդներ, դամբարաններ, հնագիտական նյութեր և այլն: Նման դեպքերում պիոներ-դպրոցականները իրենց ուսուցիչների հետ անելիքներ ունեն: Նրանք լինելով հուշարձանների պահպանության հայկական կամավոր ընկերության անդամներ՝ իրավունք ունեն անմիջապես լինել պատահաբար բացված հուշարձանի վայրում, իշխանության տեղական մարմինների միջոցով դադարեցնել տալ կատարվող աշխատանքները, թույլ չտալ, որպեսզի ջարդվեն, ոչնչացվեն, ավերվեն արդեն բացված հուշարձաններն ու հնագիտական նյութերը, այդ առթիվ պետք է տեղեկություն հաղորդեն գիտությունների ակադեմիայի մեթոդական խորհրդին, հնագիտության և ազգագրության ինստիտուտին (Երևան, Աբովյան 68) կամ ՀՍՍՀ Պետշինի հուշարձանների պահպանության և վերականգնման վարչության (Երևան, Էնգելսի 2), Հայաստանի պետական պատմական թանգարանին (Լենինի հրապարակ), որպեսզի միջոցներ ձեռք առնվեն բացված հուշարձանների պահպանման և ուսումնասիրման համար:

Մեթոդական խորհրդի որոշմամբ կարող են նյութեր առանձնացվել նաև դպրոցական թանգարանների համար:

*Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիային կից մեթոդական խորհրդի նախագահ՝*
*պրոֆ. Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

---

*պաներեն լեզվից է և բառացի նշանակում է «լեռնաշղթա»: Սա օրինակ է այն բանի, թե ինչպես հասարակ տերմինը կարող է դառնալ աշխարհագրական հատուկ անուն: Նման օրինակներով շատ է հարուստ աշխարհագրական անունների պատմությունը:*

*5. Այդ գետը Ուրալն է, որը բաժանում է Եվրոպան Ասիայից և դառնում այդ աշխարհամասերի սահմանային գետ:*

*6. Այս անունները կապված են հանրահայտ «Ռոբինզոն Կրուզո» գրքի անվան հետ, որը լույս է տեսել Լոնդոնում 1718 թվականին, այսինքն 254 տարի առաջ: Անցել է ավելի քան երկուս ու կես դար, սակայն մարդիկ հիմա էլ հուզմունքով են կարդում այն մասին, թե ինչպես Ռոբինզոն Կրուզոն ապրում ու պայքարում էր իր կյանքի համար, անբնակ կղզում:*

*Ինչպես հայտնի է, Դանիել Դեֆոյի նշանավոր վեպի հիմքում իրական մի պատմություն է ընկած, որը տեղի է ունեցել նավաստի Ալեքսանդր Սելկիրկի հետ: Վերջինիս ափ էին իջեցրել Խուան Ֆերնանդես արշիպելագի անմարդաբնակ կղզիներից մեկում, Չիլիի ափերի մոտ, ուր նա անց էր կացրել չորս տարի:*

*Ի հավերժացումն Դանիել Դեֆոյի վեպի հերոս Ռոբինզոն Կրուզոյի և նրա իսկական նախատիպի՝ Ա. Սելկիրկի, խաղաղ օվկիանոսում գտնվող և Չիլիին պատկանող Խուան-Ֆերնանդես արշիպելագի կազմի մեջ մտնող երկու կղզիները վերանվանվել են մեկը՝ (Մաս-Աֆուերա) Ռոբինզոն-Կրուզո, իսկ մյուսը՝ (Մաատիերա) Ալեքսանդր Սելկիրկ:*

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*
*աշխարհագրագետ*


Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 7 հուլիս 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-15. ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 06634: Պատվեր՝ 1067: Տպաքանակ՝ 73712: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/VI 1972 թ..

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

